



Передаем горячий привет читателям журнала „Пионер."

[illegible] [illegible]

25.6.65г



ՀՈՒԼԻՍ
№ 7 1965 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԱՍՅԱ

### ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

Եթե ոչ աշխարհագրությունից, ապա ուղղագրությունից հարկավոր էր ամբողջ դասարանին «երկու» նշանակել: Երբեմն աշխարհամասի անունն էին գրում «Ասյա», երբեմն իրենց դասարանի ամենափոքրահասակ աղջկա անունը՝ «Ասիա»:

Բայց ի՞նչպես կարելի էր շփոթել այդ երկուսին իրար հետ, երբ Ասիան բռնում էր քառասուն միլիոն քառակուսի կիլոմետրից ավելի տարածություն, իսկ Ասյան՝ նստարանի կեսից էլ շատ պակաս:

Դասարանի բոլոր տղաներն ու աղջիկները մի ժամանակ կռվում էին նրա կողքին նստելու համար: Բայց ոչ թե տեղի լայն լինելու պատճառով, այլ որովհետև բոլորը սիրում էին Ասյային:

Զարմանալի էր, մի՞թե հնարավոր էր լինել այդքան համեստ: Բավական չէր, որ ինքը կազմվածքով այնքան փոքր էր, դեռ սուսիկ-փուսիկ էլ էր: Դե եկ ու նկատիր նրան: Բայց, ապա, թող փորձեր մի օր չգալ դասի: Բոլոր ընկեր-ընկերուհիները կզգային նրա բացակայությունը և կտխրեին:

Ինչպե՞ս էր տեղավորվել այդքան փոքր աղջկա մեջ այդքան թվաբանություն, քերականություն, աշխարհագրություն, և այլն, և այլն: Երբ էլ հարցնեին նրան, թե ինչ է ստացել այսինչ առարկայից, նա կպատասխաներ առանց հպարտության, շատ սովորական տոնով.

— «Հինգ»:

— Իսկ այնի՞նչ առարկայից:

Ասյան զարմացած կնայեր ավելորդ հարցեր տվողին և նորից կպատասխաներ.

— «Հինգ»:

Եվ եթե շարունակեին հարցնել՝ «իսկ երրորդ առարկայի՞ց», նա ձեռքը թափ կտար և կգնար իր գործին: Մի՞թե պարզ չէ, որ «հինգ», էլ ինչո՞ւ են տալիս ավելորդ հարցեր:

Ասյան այնքան էր սովորել իր «հինգերին», որ ստանալիս չէր էլ ուրախանում առանձնապես: Բայց եթե որևէ մեկը «երկու» էր ստանում, նա քիչ էր մնում լաց լիներ: Դասամիջոցին մոտենում էր նրան, բռնում էր ձեռքը և լուռ կանգնում նրա դեմ, տխուր նայում աչքերին: Ապա բարկանում էր՝ բարկանալու ոչ մի տպավորություն չթողնող իր ձայնով.

— Ախր ածականն ի՞նչ է, որ դու դրանից «երկու» ստանաս: Ասեիր ինձ, միասին կպարապեինք, ի՞նչ ես զոռոզություն անում, թե տղա ես: Ուզո՞ւմ ես՝ դասերից հետո գնանք մեր տուն, կամ ձեր տուն, կամ դիմացի այգին, նստենք պարապենք...



Թեև Ասյան ոչ մեկից էլ փոքր չէր տարիքով, բայց քանի որ փոքրահասակ էր, բոլորը մեծավարի շոյում էին նրա գլուխը և շնորհակալություն հայտնում սրտացավ ընկերասիրության համար:

Ուղղակի հետաքրքիր էր, թե ինչպես էին բոլորը

լսում Այային։ Ամենաչար տղաներն անգամ թողնում էին իրենց չարությունն անելը, երբ Այան էր պահանջում խնդրելու ձևով։

Մի անգամ դասարանի ամենակռվիկ տղան էշ էր սարքել կավից։ Այնքան էշավարի էշ, որ բոլորը թուլացան ծիծաղից։ Չար տղաներից մեկը խնդրեց, ուղղակի աղերսեց, որ նա էշը նվիրի իրեն։ Բայց քանի որ չէր նվիրում, փախցրեց։ Էշի քանդակագործն ընկավ նրա հետևից, բայց՝ իզուր։ Չար տղան բարձրացավ նստարանի վրա, էշը դրեց իր գլխին և հայտնեց.

— Թող Այան ասի՝ կվերադարձնեմ։

Իսկ Այան չասաց։ Մե՞ծ բան է, ի՞նչ է, կավե էշ, թող չվերադարձնի։ Իսկ կռվիկը, փոխանակ ետ ուզելու, կարող է նստել ու նորից սարքել։ Այնպես որ, թեև Այան սուսիկ-փուսիկ էր, բայց «մայրիկի խելոք բալիկ» չէր, նա էլ էր սիրում չարաճճիություններ, ու թեև ինքը չէր անում, բայց սիրում էր, երբ անում էին ուրիշները։

Դասարանի տղաներն ուղղակի ուզում էին, որ մի որևէ անծանոթ տղա փորձեր նեղացնել Այային, որպեսզի նրանք իրենց կրծքով պաշտպանեին նրան։ Բայց նեղացնող չկար։ Երբ փողոցում նրանք տեսնում էին նրան, վազելով մոտենում, ուղեկցում և հարցնում էին խորհրդաբար.

— Ի՞նչ է, Այա, քեզ հո նեղություն չե՞ն տվել։

— Ոչ։ Ո՞վ պիտի։

— Բա ինչո՞ւ կանգնեցրեց քեզ՝ ա՛յ, այն տղան, իսկ դու թողեցիր հեռացար։

— Հարցնում էր, թե որտեղ է համար քսանչորս...

— Սուտ ես ասում, Այա։

— Սուտ եմ ասում։ Ասաց. «Դու հոկա Սասունցի Դավթի ի՞նչն ես»։

Տղան նետվում էր դեպի անծանոթը՝ նրան պատժելու համար, բայց Այան բռնում էր թևը.

— Իսկ ես ասացի. «Այ, դու չգիտես, թե ինչն եմ, բայց ես գիտեմ, թե դու ինչն ես՝ ծիտ պոչն ես»...

— Մեր երկրում ծիծաղել մարդու փոքրության վրա,— շարունակում էր մեծավարի զայրանալ տղան։— Իսկ ի՞նչն ինչի է պետք, որ երկար է՝ ձողի պես։

— Դե նա չարությամբ հո չասա՞ց, այլ՝ կատակով։

— Ուրեմն դու էլ լավն ես,— այս անգամ Այայի վրա էր բարկանում ընկերը։— Չարությամբ չասաց, իսկ դու նրան՝ ծիտ պոչ...

— Ազնիվ խոսք, նման էր։

Նրանք ծիծաղում էին և շարունակում ճանապարհը։ Տղան Այային հասցնում էր տուն և հպարտ, կարծես ազատել էր սարսափելի [illegible] տանջանքներից, վերադառնում էր իր գործին։

Այան հաճախ էր կինո գնում դասարանի տղաների և աղջիկների հետ, խմբով։ Որպեսզի նա լավ տեսներ էկրանը, մյուսները հանում էին իրենց վերարկուներն ու ժակետները և դնում նրա աթոռի վրա։

— Նստիր։

Եվ որովհետև բոլորն էին ուզում անպայման տալ իրենց հագուստը, հաճախ այնպես էր ստացվում, որ նստածներից ամենաբարձրահասակը դուրս էր գալիս Այան։

Մի անգամ նրա հետևում նստած մի կին ասաց.

— Ոչինչ չի երևում ինձ, աղջիկ, մի՛ շարժվիր դեսուդեն, դու շատ բարձրահասակ ես։

— Նա մեղավոր չէ, մորաքույր,— բացատրեց Այայի ընկերներից մեկը,— աննորմալ է ծնվել, մարմինը շատ երկար է, իսկ ոտքերը՝ կարճ։ Տեսեք, հատակին չեն հասնում։

Եվ ահա, մի օր, Այան դպրոց չեկավ...

Դա չտեսնված բան էր։ Չնայած իր փոքրահասակ լինելուն, նա բոլորովին չէր հիվանդանում։ Մի՞թե հիմա հիվանդացել է առաջին անգամ...

Առաջին դասի ժամանակ բոլոր աշակերտներն անհանգիստ էին և ուսուցչուհին չգիտեր դրա պատճառը։ Իսկ դասամիջոցին նրանք այլևս չհամբերեցին և մեկին ուղարկեցին ուսուցչանոց՝ Այային հեռախոսով զանգ տալու համար։

— Շուտով կգամ...— լսվեց հեռախոսափողի մեջ Այայի ձայնը, որը մի տեսակ օտարոտի էր, համարյա անծանոթ։

Դասարանցիները, իհարկե, շատ ուրախացան, որ Այան հիվանդ չէ, բայց նաև խիստ մտահոգվեցին։ Ի՞նչ է նշանակում «հիմա կգամ»... Մի՞թե կարելի է դպրոց գալ՝ երբ ուզենաս, և մի՞թե այդպիսի անկարգապահ աղջիկ է Այան...

— Իսկ ուրիշ բան չհարցրի՞ր։

— Ոչ,— պատասխանեց հեռախոսով խոսողը,— անհարմար էր երկարացնել, ուսուցիչները նստած էին։ Նա ինքը կգա, կբացատրի։

Երկրորդ դասի ժամանակ նույնպես, Այան չեկավ։ Բայց մեծ դասամիջոցին տղաներից մեկը վազեց եկավ և հայտնեց, որ Այան ուսուցչանոցում է։

Բոլորը վազեցին դեպի ուսուցչանոց, նայեցին կիսաբաց դռնից։

Այան կանգնել էր սենյակի մեջտեղում, թեթև վերարկուով, փոքրիկ գլխարկով, առանց դասագրքերի։ Նա կարծես մեծացել էր տարիքով, սովորական Այան չէր։ Եվ խոսում էր ուսուցիչների հետ խիստ մեծավարի-լուրջ։

Նկատելով կիսաբաց դռնից նայող իր ընկերուհիներին, նա, առանց ժպտալու, լուրջ [illegible] գլխով արեց, այսինքն թե՝ հիմա կգամ [illegible] ես։ Այա մեկնեց իր փոքրիկ ձեռքը և...



և մնաս բարով արեց բոլոր ուսուցիչ-ուսուցչուհիների հետ, իսկ նրանցից շատերը համբուրեցին նրան…

Այս ի՞նչ բան է։ Մի՞թե…

Բայց այդ րոպեին Ասյան դուրս եկավ և խմբի հետ միասին մի կողմ քաշվեց ուսուցչանոցի դռնից։

— Մնաք բարով,— ասաց նա հանգիստ ձայնով,— ես մեկնում եմ։

— Քանի՞ օրով…— զարմանքից սառած, հետաքրքրվեցին նրան շրջապատողները։

— Ընդ… — Ասյան չկարողացավ շարունակել և լաց եղավ։— Ընդմիշտ…

— Վա՞տ բան է պատահել… — վախեցած գուշակություն արեց տղաներից մեկը։

Ասյան գլուխն օրորեց բացասաբար։

— Էլ ուրեմն ինչո՞ւ ես լալիս։



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

— Բաժանվում եմ ձեզանից… Հայրիկին ուղարկում են Վիետնամ՝ մի քանի տարով, հիդրոկայան կառուցելու։ Մենք գնում ենք ընտանիքով՝ մայրիկը, ես…

«Վիետնամ» բառը հանգստացրեց Ասյային, նա սրբեց արցունքները։ Իհարկե, հետաքրքիր է տեսնել դասագրքի Վիետնամը, ոնց որ ինքդ մտնես դասագրքի մեջ…

Բայց այժմ խոնավ էին դասարանի համարյա բոլոր աղջիկների աչքերը, իսկ տղաներինը՝ արտասվելու չափ տխուր։

Դասի զանգը տվեց։

— Ե՞րբ եք մեկնելու, Ասյա։

— Երեք ժամից։ Բայց ես կմտնեմ ձեզ հետ, վերջին անգամ դաս կլսեմ…

Նա նորից արտասվեց։

Դասը, որ հայոց լեզու էր, ուսուցչուհին ամբողջապես նվիրեց մեծ Վիետնամին և փոքր Ասյային։ Սկսեց կատակել, զվարճացրեց բոլորին, ապա ասաց.

— Կանցնեն տարիներ, ձեզանից ամեն մեկը կընկնի տարբեր տեղեր՝ համալսարան, ինստիտուտ, լաբորատորիա, գյուղ, գործարան… Եվ ահա, մի անգամ, ձեզանից մեկնումեկը փողոցում կտեսնի արևից թխացած մի գեղեցիկ, փոքրահասակ աղջկա։

— Ներեցեք… Ձեր դեմքն ինձ ծանոթ է։ Դուք Ասյան չե՞ք…

— Անի՛կ…

Եվ դուք կգրկեք իրար, կհամբուրվեք, կհիշեք մեր դպրոցը։ Դպրոցն անկարելի է մոռանալ։ Կըհարցնեք մյուս ընկերների մասին, կհիշեք…

Երբ դասն ավարտվեց, դպրոցի վարիչը չափազանց ուրախացրեց դասարանցիներին. վերջին դասը կարող ենք հետաձգել, գնացեք ճանապարհ դնելու ձեր ընկերուհուն…

Ասյան վազեց տուն, իսկ ամբողջ դասարանը՝ կայարան։ Երեխաները, համարյա բոլորը, եղել էին Ասյայենց տանը, այն էլ մի քանի անգամ, և ծանոթ էին նրա ծնողներին։ Երբ նրանք իրենց աղջկա հետ եկան կայարան, բանից դուրս եկավ, որ ոչ մի ուղևորի այդքան շատ ճանապարհ դնողներ չկային, որքան որ Ասյային։ Ինչքա՜ն հրաժեշտ տվեցին իրար, ինչքա՜ն համբուրվեցին, քիչ մնաց Ասյան ուշանար բարձրանալ վագոն։

Երբ գնացքը շարժվեց, բոլորը, տղաներն էլ հետը, արտասվեցին զանազան չափերով, նայած իրենց զսպելու ընդունակությանը։ Իսկ ինչո՞ւ

(Շարունակությունը՝ 9-րդ էջում).

# ԾԱՂԻԿԸ

ՌԱՖԱՅԵԼ ՇԻՐՈՅԱՆ

Արևը նոր էր թեքվել դեպի մայրամուտ, երբ մենք սկսեցինք ցած իջնել լեռներից: Ես և գրչակից բարեկամս: Նա շրջանային թերթի աշխատող էր: Խմբագրությունից նրան ասել էին, որ Աղրիջա գնա և հերթական համարի համար նյութեր բերի: Իմանալով, որ ես իրենց շրջանում եմ, եկավ մոտս, հյուրանոց և ինձ էլ հետը լեռները տարավ: Այնքան շտապեցրեց, որ ես լավ չհասկացա, թե ուր պիտի գնանք: Երբ արդեն «Վիլիսով» ճանապարհ ընկանք, ես նորից հարցրի.

— Էս ո՞ւր ենք գնում:

— Աղրիջա: Լսե՞լ ես: Մեր կողմերում հայտնի արոտավայր է, լեռնային ընդարձակ հարթության վրա:

— Այս կողմերում առաջին անգամ եմ, չգիտեմ, — ասացի ես:

— Ավելի լավ: Կտեսնես, կծանոթանաս, — իմ պատասխանից գոհ՝ վրա բերեց նա:— Հիմա Աղրիջայի լավ ժամանակն է: Տարվա մյուս եղանակներին, նույնիսկ՝ գարնանը, այստեղ ձյուն է, ցուրտ:

— Ի՞նչ բարձրության վրա է Աղրիջան:

— Մոտ երկու հազար հինգ հարյուր մետր՝ ծովի մակերևույթից:

«Վիլիսը» հևալով և փնչալով անընդհատ դեպի վեր էր բարձրանում ոլորապտույտ ճանապարհով, իսկ ընկերս պատմում էր հայրենի բնության հրաշալիքների մասին:

...Ամռանը կոլտնտեսությունները իրենց կովերն ու ոչխարները Աղրիջա են բերում: Հյութալի, առատ խոտ, սառնորակ աղբյուրներ, մաքուր օդ: Անասունները կուշտ-կուշտ ուտում, գիրանում են, առատ կաթ տալիս: Խոտի մի մասն էլ հնձում, սայլերն ու ավտոները բարձած տուն են ուղարկում ձմեռվա համար:

— Աղրիջան կերի շտեմարան է,—եզրափակեց ընկերս իր պատմությունը և դուրս նայեց ավտոյից:

Քիչ հետո մենք դուրս եկանք ընդարձակ սարահարթ: Լեռնային զով, կազդուրիչ քամի, վերևում պայծառ, դուրեկան արև: Մեր առջև հեքիաթային հսկա գորգի պես փռված էր Աղրիջան: Թանձր կանաչ, ծաղիկներ, բուրմունք:

Այստեղ-այնտեղ երևում էին աշխատող մարդկանց խմբեր: Նրանք խոտ էին հնձում, դիզում կամ սայլերին բարձում: Քամին մեր ականջին էր հասցնում անորոշ ձայներ: Երբեմն որոշակի լսվում էին շների հաչոց, կովերի բառաչ, ոչխարների մայուն: Աղրիջայում եռում էր կյանքը:

Մենք մոտեցանք հնձվորների առաջին խմբին: Առույգ, արևից քիչ սևացած երիտասարդ մարդիկ խոտ էին հնձում, խոսում, կատակում, ծիծաղում տեսնելով մեզ, ոմանք գերանդիները ցած դրին ու մոտեցան: Նրանք առաջին անգամը չէր, որ տեսնում էին իրենց թերթի աշխատողին:

Հետզհետե բոլորն էլ հավաքվեցին: Ընկերս սկսեց զրուցել և նշումներ անել ծոցատետրում: Հարցուփորձից ես հասկացա, որ պատրաստվող նյութերի թեման խոտհունձն էր, անասունների համար կերի ձմեռային պաշար ստեղծելը: Զրույցը գնալով աշխուժացավ ու ջերմացավ: Ես էլ մոտիկ կանգնած լսում էի: Բայց հանկարծ իմ ուշադրությունը գրավեց մի կարմրավուն ծաղիկ, որ դուրս էր պրծել գերանդու բերանից ու կան-

ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

## ԱՐՋՆ ՈՒ ՃԱՆՃԸ

Արջը նստել անտառի մեջ,
Ճանճ է բռնում թաթով:
Մի ճանճ թաքուն արջի աչքին
Մեղր է քսում մատով:

Արջը լալիս հոնգուր-հոնգուր,
Պտտվում է տեղում.
— Հիմար ճանճեր, ձեր տունը շեն,
Ինչի՞ եք ինձ նեղում:

Եվ ճանճերի պարսը մեկից
Թռչում է ու գալիս,
Ծիծաղում են. — Տեսե՛ք, արջը
Աչքից մեղր է լալիս:

## ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ՀԵՔԻԱԹ

Ճերմակ ամպից արցունք կաթեց,
Ամպը թրջվեց մեկից,
Լաջվարդ երկնին մութը պատեց
Աշխարհի չորս ծագից:

Մութ ամպերը գալիս, գալիս,
Շուրթերն են ցած կախում,



Ինչպես որ դու լաց լինելիս
Քո շուրթերն ես կախում։

Սև ամպերը երկրի վրա
Սև շուրթերն են կախում։
Եվ հողի բաց շրթունքներին
Կաթ-կաթ անձրև մաղում։

Հետո քամին թռչում է վեր,
Անձրևն է ցած գալիս,
Ծիծաղում են ամպերն ավեր,
Քամիներն են լալիս։

Մի սև ցլիկ հեռու դաշտում,
Սև դնչիկը՝ քարին,
Լսում է այս երգն անկշտում,
Խորհում չարն ու բարին։





## ԳԻՇԵՐԸ ՍԱՐՈՒՄ ԵՄ ՔՆԵԼ

Սարի լանջին ծաղիկների
Հազարագույն, հազարաձայն
Աչուկներն են խոսում։

Շուտ արթնացել եմ ես քնից,
Հեռու, հեռու, հեռու երկնից
Կապույտ, կապույտ ամպիկների
Ծլվլոցն եմ լսում։

Ճերմակ, ճերմակ ամպերի տակ
Պտտվում են
Մի կանաչ դաշտ
Ու մի դեղին վերմակ։

* * *

Ծիծաղում է քամին,
Ծիծաղում է լիճը,
Փշրվում է փոքրիկ
Կարապների նինջը։

Կարապները վախից
Աջ ու ձախ են թռչում։
Զարմանում է Լյալյան.
— Կարապ չկա լճում։

Խաղաղվում է քամին,
Խաղաղվում է լիճը,
Լյալյան երազի մեջ
Օրորում է փոքրիկ
Կարապների նինջը։

*Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ*

*զուն մնացել։ Ես մոտեցա ու քաղեցի այդ ծաղիկը. հետո մի ուրիշը... էլի ծաղիկներ և այդպես անվերջ... Ես այլևս չէի լսում մարդկանց խոսակցությունը։ Ինձ հետ խոսում էին երփներանգ ծաղիկները։ Աննկատելիորեն հեռանալով մարդկանցից՝ ես քայլում էի մինչև ծունկս հասնող կանաչ խոտի միջով և ծաղիկներ քաղում։ Քաղում էի ու փունջ կազմում։ Ես քայլում էի ու փընտրում նոր գույներ, նոր երանգներ։ Հանկարծ ականջիս հասավ մի ձայն։ Ես նայեցի։ Ընկերս էր։ Ձեռքով էր անում. ինձ կանչում էր ընկերս... ինձ կանչում էին ծաղիկները...*

*Վերադարձա։ Սարվորները նստած աղբյուրի շուրջ հաց էին ուտում։ Գյուղական լավաշ, պանիր, վարունգ, պոմիդոր։ Ինձ էլ բաժին ընկավ դրանցից։ Ինչքա՜ն քաղցր ու հաճելի է հաց ու պանիրը լեռներում, զնգզնգուն սառնորակ աղբյուրի մոտ։*

*Շուտով մենք հրաժեշտ տվինք հյուրընկալ սարվորներին ու հեռացանք։ Ընկերս մի երկու խմբի մոտ էլ կանգ առավ, զրուցեց մարդկանց հետ։ Նոր գրառումներ արեց, և մենք ճանապարհ ընկանք դեպի տուն։*

*Երկուսս էլ գոհ էինք ճանապարհորդությունից։ Ես ինձ հետ տանում էի Աղիջայից մի պատառ.*

մի մեծ փունջ ծաղիկ, բուրմունք, արև, իսկ ընկերս՝ լրագրային նոր նյութեր, նոր մտքեր:

* * *

Հյուրանոցում տոթ էր, մանավանդ իմ փոքրիկ սենյակում: Դուռն ու պատուհանը բաց արի և պառկեցի հանգստանալու: Հոգնել էի: Պառկած, ես մտովի նորից վերադարձա Աղրիջա՝ ամփոփելու տպավորություններս, մտքերս, այն, ինչ տեսա ու զգացի:

Երբ արդեն սեղանի մոտ նստած գրում էի, ասես լեռնային մի մեղմիկ զեփյուռ, կիսաբաց դռնից ներս սահեց մի փոքրիկ աղջիկ և կամաց մոտեցավ պատից կախված փոքրիկ բարձրախոսին

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



խարտյաշ մազեր ուներ, լազուրի պես կապույտ աչքեր, թմփլիկ-թմփլիկ այտեր: Վախվորած մեկ ինձ էր նայում, մեկ ներքև և ոտքը կամաց հատակին քսում:

Ինձ թվաց, որ դա հենց այն հոկտեմբերիկն է, որին երգել է մեծ պոետը, նրան է նվիրել սքանչելի տողերը.

Արև՛ ունես քո աչքերում,
Քո աչքերում, քո ձեռքերում,
Քո այդ փամփլիկ թաթիկներում,
Քո խաղուտիկ աչիկներում:

Իմ փոքրիկ «անկոչ» հյուրը իր «խաղուտիկ» աչքերով ինձ նայեց ժպտալով և ասաց.

— Ես գիտեմ ռադիոն միացնել:

— Միացրու, աչիկ ջան, միացրու,— գիրս ընդհատելով ասացի ես:

Նա աշխույժ վեր բարձրացրեց ձեռքը և ուժեղ պտտեց բարձրախոսի բռնակը: Սենյակը լցվեց աղմուկով: Իր արածից դժգոհ, մի տեսակ շփոթված, երեխան կրկին ինձ դարձավ:

— Ես անջատել կարող եմ…

— Անջատիր, բալիկ ջան, անջատիր:

Նա արագ բարձրացավ մեկ ոտքի վրա և թափով շուռ տվեց բռնակը: Աղմուկը դադարեց: Նա հպարտ կանգնեց մեջքը պատին հենած և զննեց սենյակը: Նրա հայացքը կանգ առավ սեղանին դրված ծաղկեփնջին, որ ես էի բերել լեռներից: Հետո մոտեցավ: Մտածում էր երևի, թե ինչպես վերսկսի խոսակցությունը: Ելքը գտնվեց:

— Անունդ ի՞նչ է, աչիկ ջան,— հարցրի ես:

Տեղում կանգնած նա շուռումուռ եկավ, մեկ առաստաղին նայեց, մեկ պատերին, վախենալով, որ ուրիշներն էլ կարող են լսել, կամաց շշնջաց.

— Աստղիկ:

— Իսկ որտե՞ղ է ձեր տունը,— հարցրի ես,— ենթադրելով, որ գուցե մոլորվել է և հյուրանոց ընկել:

Նա ոչինչ չպատասխանեց: Վազեց դեպի դուրս, կանգնեց բաց դռների մեջ և ձեռքով ցույց տվեց միջանցքի մյուս կողմը: Հետո նորից վազելով եկավ սեղանի մոտ: Նորից նայեց ինձ և ամոթխած ասաց.

— Ես կարմիր ծաղիկ եմ սիրում, այ, էն կարմիրը,— և գլխով նշան արեց:

Ես նրան տվեցի կարմիր ծաղիկը, որ առաջինը քաղեցի Աղրիջայում:

— Կապույտ էլ եմ սիրում, սպիտակ էլ…

Դրանք էլ տվի: Նա ուրախ-ուրախ վերցրեց և փունջ սարքեց: Մի պահ կանգ առավ. մտածեց, թե էլ ինչ գույնի ծաղիկ խնդրի: Բայց այլևս գույների անուններ չտվեց: Հանդարտ բարձրացավ աթոռին և մատով ցույց տվեց.

— Ա՛յ, է՛ս եմ սիրում, է՛ն եմ սիրում…

Ես տվեցի բոլորը, ինչ որ Աստղիկը ուզեց: Ծաղկեփունջը կիսվեց: Շատը նրան, քիչը՝ ինձ: Երջանկությունից փայլեցին Աստղիկի կապուտակ աչքերը, արևի պես պայծառացավ նրա դեմքը: Ծաղիկներն ասես խամրեցին, խունացան նրա դեմքի ճառագայթումից: Հետո կամացուկ ցած սահեց աթոռից ու գնաց:

Նրա հետևից ես էլ դուրս եկա միջանցք՝ մնացած ծաղիկները ձեռքիս: Աստղիկը մեկ կանգնում, ծաղիկներից հոտ էր քաշում, մեկ ետ նայում ու քայլում միջանցքով: Ես ձայն տվի.

— Աստղի՛կ…

Կանգ առավ. վախվորած նայեց: Կարծեց, որ պիտի ետ վերցնեմ ծաղիկները: Մենք մոտեցանք իրար: Ես նրան տվի մնացած բոլոր ծաղիկները:

Նա վարանած կանգնած էր: Հետո մի վերջին

*անգամ էլ ինձ նայեց և վազելով հեռացավ: Միջանցքի մյուս ծայրին, դռան մեջ կանգնած, Աստղիկին էր սպասում մայրը:*

*Ես վերադարձա սենյակս, որն ինձ թվաց ավելի դատարկ և անհրապույր: Վերհիշեցի պոետի մի քանի տողերն ևս.*

Քո խատուտիկ աչիկներով
Պիտի նայե՛ս մի օր հեռուն,
Դրո՛շ պիտի պահես մի օր...

*Եվ ինձ պաշարեցին խոհերը: Աղրիջայի ծաղիկները շուտով կխամրեն, կչորանան, կթափվեն: Իսկ Աստղիկը չի թառամի, չի խամրի: Կյանքի հավերժական ծաղիկն է նա:*

*Ծաղիկների ծաղիկը:*



## ԼՈՌԻ ՋՎԵՐԸ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Ջվեր է բերել
Սուսիկս արտից,
Մի տխրություն է
Հոսում իմ սրտից:
Բալիկս սևաչ
Ուրախ է այնքան,
Իսկ ես նեղացած
Ասում եմ նրան.
— Ինչո՞ւ ես բերել
Ջվերը, բալիկ,
Դարձրել նրանց
Ձեռքի խաղալիք:
Լոռիկ մայրը խեղճ
Ի՞նչ կանի հիմա,
Այդ ծվերի մեջ
Ձագերն են նրա:
Քեզ հիմա թաքուն
Որ մեկը տանի,
Ասա, սիրելի՞ս,
Մայրիկն ի՞նչ կանի:

# ԲԱՐԻ ԳԻՇԵՐ, ԻՄ ԼԱՎ ՑՈՂԻԿ

*ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ*

Տասնհինգ տարեկան Արտակը և նրանից չորս տարով փոքր քույրը՝ Ցողիկը, կանգնել էին կենդանաբանական այգու ծառուղում, առյուծի վանդակի դիմաց, և զարմանալի համբերությամբ սպասում էին քնած առյուծի արթնանալուն: Նա ձըգվել էր հասակով մեկ, հսկայական գլուխը դրել էր թաթերին և՛ համառորեն չէր ուզում արթնանալ: Որքա՜ն լավն էր նրա թավ բաշը:

Այդ ժամանակ ծառուղով նրանց մոտենում էր մի մարդ. նա կաղում էր՝ մի ոտքից. ձեռքին մահակ ուներ, գլխին՝ թեք դրած կեպի, հագին՝ կեղտոտ ու հնամաշ վերնաշապիկ, ոտքերին՝ զինվորական ճտքավոր կոշիկներ, որոնք նույնպես կեղտոտ էին ու հնամաշ: Նա կանգնեց երեխաների մոտ, նայեց քնած առյուծին և հարցրեց.

— Ի՞նչ է, չի՞ ուզում արթնանալ:

— Չի ուզում, քեռի,—ծիծաղելով ասաց Արտակը,—մենք էլ ենք սպասում:

— Հե՛յ,—ճչաց մարդն առյուծին և շվացրեց:

Ցողիկը մտածեց և ասաց.

— Երևի գիշերը չի քնել:

Մի ոտքից կաղ մարդը նայեց ծառուղու այս ու այն կողմը, իսկ ծառուղում միայն հատուկենտ մարդիկ կային, հետո մոտեցավ վանդակին, նորից զննեց շուրջը, մահակը ձողերի արանքից ներս տարավ, բարձրացրեց ու ամբողջ թափով հարվածեց առյուծի գլխին: Կենդանին ցատկեց, զարկվեց ձողերին և նույնիսկ չկարողացավ թաթը ձողերի արանքից հանել: Խուլ մռնչաց: Կաղ մարդը ծիծաղում էր:

Արտակը և քույրը կանգնել էին շվարած ու նայում էին այդ զարմանալի վատ մարդուն:

— Ինչու՞ խփեցիք,—հազիվ կարողացավ ասել Արտակը,—ամո՛թ է:

Մարդը նայեց տղային և մահակը թափահարեց.

— Ուզու՞մ ես քո գլխին էլ թմփացնեմ:

— Ես պահակին կհայտնեմ:

— Պահակիդ գլխին էլ կթմփացնեմ:

Ցողիկը բռնեց եղբոր թևը և զգաց, թե նա ինչպես է դողում: Հետո նայեց կաղ մարդու աչքերին, որոնք արյունով էին լցված: Մարդը ատամների արանքից թքեց ավազին, օրորվելով շուռ եկավ ու գնաց օրորվելով:

Արտակը նայում էր նրա մեջքին. նա գնաց ու կանգնեց ծառուղու խորքում, գարեջրի կրպակի մոտ: «Հանկարծ ես միանգամից մեծանայի,— ատամները կրճտացնելով մտածում էր Արտակը,— դառնայի Ցորք Անգեղի նման զորեղ, այդ մարդու ծոծրակից բռնած վերցնեի գետնից, ինչպես մի

ողորմելի մկան ձագին կարելի է վերցնել, ու վանդակի ճաղերի արանքից խոթեի ներս...» Իսկ Ցողիկը նայում էր վանդակի շուրջը պտտվող առյուծին և մտածում էր. «Որքա՜ն նեղ է նրա աշխարհը...» Հետո երևի հոգնեց, կանգ առավ. երկար նայում էր փոքրիկ աղջկան: Առյուծի աչքերը բաց դարչնագույն էին, բարկությունից՝ պոչը ցցված: Երևի նայելուց էլ հոգնեց, հորանջեց, ձգվեց իր նախկին դիրքով ու գլուխը դրեց թաթերին: Ցողիկը նայում էր նրա ծանր-ծանր թարթվող աչքերին, և երբ փակվեցին դրանք, փոքրիկ աղջիկը տեսավ, որ նրա կոպերը թաց են:

Արտակը դեռ շարունակում էր նայել հեռու կըրպակի մոտ կանգնած կաղ մարդուն, իսկ Ցողիկը դժվարանում էր եղբորն ասել, որ առյուծը լաց է լինում: Նա վախենում էր, որ ինքն էլ լաց կլինի: Առանց այդ էլ տանը բոլորը ծիծաղում են նրա



Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

արցունքների վրա: «Բավական է սարդոստայնին կպած ճանճը տզզա, մեր Ցողիկը լաց կլինի», — ասում են բոլորը:

— Գնաք տուն, Արտակ,—դիմեց նա եղբորը:

— Գնանք օձերին էլ նայենք, հետո:

— Չեմ ուզում,—հրաժարվեց Ցողիկը,—ես օձերից վախենում եմ:

Արտակը համաձայնեց. դե նա լավ գիտեր, որ եթե պնդի, քույրը կսկսի իր տզզոցը:

Կենդանաբանական այգու կանաչ ծառուղով նրանք գնացին: Երբ դուրս էին եկել մուտքից ու սպասում էին ավտոբուսի, Ցողիկը հազիվ կարողացավ ասել.

— Արտակ, դու չտեսար, առյուծը լաց էր լինում... Երևի գլուխը շատ ցավեց:

— Չէ՜ մի...—հեգնեց եղբայրը,— նրա համար այդ մահակի հարվածը նույնն էր, եթե, ասենք, հիմա քո գլխին մի ճանճ նստի:

— Ախր ես տեսա, — պնդեց Ցողիկը, — ազնիվ խոսք, նա լաց էր լինում:

«Դե ի՞նչ ասես այս տզզանին»,—մտածեց տղան:

— Կարող է պատահել,—մի կերպ գլուխն ազատեց Արտակը,—պարզապես նա լաց է եղել վիրավորանքից, անզորությունից. պրծա՞նք:

«Վիրավորանքի՜ց... Անզորությունի՜ց,—մտքում կրկնեց Ցողիկը,—ա՜յ, դա ճիշտ է»:

Հիմա արդեն տանն են: Իջևանից մեկ օրով եկել է քեռի Շմավոնը և իր սովորության համաձայն ուրախ ու ծիծաղելի բաներ է պատմում. բոլորը ծիծաղում են, բացի Ցողիկից և մեկ էլ տատիկից, որ հիվանդ է:

Ճաշից հետո Արտակի ընկերները բակից շվվացնելով կանչում են ներքև՝ ֆուտբոլ խաղալու. հայրիկը և քեռի Շմավոնը նստում են դեմ-դիմաց ու բաց են անում նարդին. տատիկը տնքալով գնում է ու գրավում իր սովորական մեծ բազկաթոռը, որը դրված է սենյակի անկյունում, և հենց այդ ժամանակ միայն մայրը նկատում է.

— Դու այդ, ի՞նչ է, հիվա՞նդ ես, –հարցնում է նա ու ձեռքը դնում Ցողիկի ճակատին:

Ցողիկը գլուխը թափահարում է. «Հիվանդ չեմ, մայրիկ»:

— Իսկ ինչո՞ւ ես այդպես նոթերդ կիտել:

Ցոլիկը չի պատասխանում:

—Ինչո՞ւ բակ չես իջնում:

Ցոլիկն ուսերը վեր է քաշում:

— Ասա, ի՞նչ է պատահել:

Հայրիկն ընդհատում է խաղը, ակնոցի վերևից նայում է երեխային:

— Պարզ չէ՞,—ասում է նա,—երևի եղբոր հետ գժտվել է:

— Հա՞,—հարցնում է մայրիկը:

— Չէ:

— Իսկ ի՞նչ է պատահել,—արդեն բարկանում է մայրիկը,—վերջապես ասելո՞ւ ես, թե՞ ոչ:

Ցոլիկը ծամում է շրթունքները. հիմա նա միայն մի բան է ցանկանում, որ լաց չլինի, և բառերը դժվարությամբ իրար կապելով ասում է.

— Կենդանաբանական այգում... Մի կաղ քեռի... Փայտով խփեց քնած առյուծի գլխին...

Ու էլ ոչինչ չի կարողանում ասել: Չի կարողանում պատմել, թե ինչպես առյուծը լաց եղավ, և չի կարողանում կրկնել եղբոր խոսքերը՝ «վիրավորանքից ու անզորությունից», որովհետև սենյակում ճայթում է ծիծաղը: Ծիծաղում են բոլորը, բացի տատիկից:

Ցոլիկն ուզում է խռովել ու դուրս գալ սենյակից, բայց հայրիկից վախենում է:

Եվ այդպես մինչև երեկո, մի քանի անգամ տնեցիները հիշում են նրա տխրության պատճառն ու ծիծաղում: Միայն տատիկը չի ծիծաղում:

— Դե, երեխաներ, քնելու ժամ է,—հայտարարում է մայրիկը՝ ժամացույցին նայելով:

Երեխաները գնում են ննջասենյակ:

Արտակը հանգցնում է առաստաղի լույսը, վառում իր մահճակալի կողքի փոքրիկ լամպը և բարձի տակից գիրքը հանում: Նրան արգելել են պառկած ժամանակ գիրք կարդալ, բայց նա արդեն մեծ է ու ոչ ոքի չի լսում:

Ճաշասենյակից մեկ-մեկ ծիծաղի ձայն է լսվում: Ցոլիկը համոզված է, որ իր վրա են ծիծաղում: Այդ բանից նա չի վիրավորվում, որովհետև ինքն է մեղավոր, որ չկարողացավ կենդանաբանական այգում տեսած այդ տխուր պատմությունը մինչև վերջը հասցնել: Եթե նա մեծ լիներ, ինչպես Արտակը, և ոչ թե չորրորդ դասարանցի մի տզզան փոքրիկ աղջիկ, ապա նա կբացատրեր բոլորին, կասեր, որ անապատներից, անտառներից, լեռներից բռնած այս կենդանիներն առանց այդ էլ մեղք են, և չի կարելի նրանց նեղացնել...

Արտակը գիրքը թրմփոցով գցում է հատակին ու փոքրիկ լամպը հանգցնում:

Ցոլիկի կոպերը մթության մեջ սկսում են ծանրանալ:

# ԱՍՅԱ

(Սկիզբը՝ տե՛ս էջ՝ 1։)

*չարտասվել, երբ հեռանում է Ասյայի պես լավ ընկերուհին...*

*— Ասյա՜, բարևի՜ր Ասիային,—բղավեց դասարանի տղան, երբ գնացքն արդեն շարժվում էր։ Բոլորը ծիծաղեցին և զվարթացան։*

*Իսկ հաջորդ օրը դասարանում երկար ժամանակ որոշում էին, թե ով նստի Ասյայի դատարկված տեղը։ Եվ որոշեցին՝ թող նստի այն աշակերտը, որն ամենաաշխատասերն է և, երբ էլ հարցնես նրան, թե ինչ թվանշան է ստացել, պատասխանի.*

*— «Հինգ»։*

*Թող նստի այն աշակերտը, որն այնքան չի ուրախանում իր «հինգերի» համար, որքան որ տրխրում է ուրիշի «երկուսի» համար և օգնում է նրան։*

*Թող նստի այն աշակերտը, որն իր լավ վարքով օրինակ է դառնում իր ընկերների համար։*

*Թող նստի... Բայց ո՞վ նստի։ Ոչ ոք իրեն արժանի չէր համարում՝ գրավելու փոքրիկ Ասյայի տեղը։*

*— Թող նստի ամբողջ դասարանը,—վճռեցին, վերջապես։—Թող նստեն բոլորը, հերթով։*

*Եվ ահա, երբ որևէ մեկն աչքի էր ընկնում որևէ լավ բանով, նրան նստեցնում էին Ասյայի տեղը։*

*— Այսօր դու ես մեր Ասյան,—ասում էին նրանք և ծիծաղում էին, եթե դա տղա էր լինում։*

*Իսկ Ասյայի տեղը նրանց հիշողության մեջ ոչ ոք չէր գրավել։ Քանի գնում, այնքան թանկ էր դառնում այդ հիշողությունը։ Իհարկե, Ասյան կվերադառնա մի օր իր հայրենիքը, իր քաղաքը։ Եվ այն ժամանակ նրանք կհանդիպեն նրան փողոցում՝ թխացած, փոխված, հազիվ ճանաչելի, և կհարցնեն.*

*— Ներեցեք, ձեր դեմքը մեզ ծանոթ է, դուք մեր Ասյան չե՞ք...*

*Էլ ո՞վ պիտի լինի, նա է, իհարկե...*

# ՑԻՆԳԵԲԻՍԸ ԵՎ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՔԱՄԻՆ

Վաղուց, շատ վաղուց, երբ երկրի վրա դեռևս քիչ մարդ էր ապրում, կար ձկնորսների մի ցեղ։ Ամռանը նրանք հասնում էին հեռու հյուսիս, որտեղ կարող էին առատ ձուկ բռնել։ Բայց ձմռանը նըրանք ստիպված էին վերադառնալ երկրի ավելի տաք վայրերը, որովհետև հյուսիսի կառավարիչ դաժան ծերունի Կաբիբոնոկան, կամ Հյուսիսային քամին, վռնդում էր նրանց հեռու։

Կաբիբոնոկան կառավարում էր Սառցե երկիրը։ Կանաչ խոտ ու վառ ծաղիկներ էին աճում նրա երկրում, որը ձգվում էր աշխարհի հյուսիսային մասերում։ Հնդկացի ձկնորսների բախտից Կաբիբոնոկան չէր ամբողջ աշխարհի կառավարիչը։ Շավոնդազին՝ Հարավային քամին, ավելի ուժեղ էր, քան Կաբիբոնոկան, և նրա երկրում միշտ ամառ էր։

Գարնանը հյուսիս էր գալիս նաև Շավոնդազին և օգնում ձկնորսներին։ Նա կոտրատում էր լճերի ու գետերի սառույցը, և այսպիսով ձկնորսները կարողանում էին ձուկ բռնել։ Գարնանը, ամռանը և աշնանը Շավոնդազին շատ գործ ուներ անելու։ Այդ նա էր, որ կյանք էր տալիս ծաղկին ու մրգին։ Այդ նա էր, որ հասցնում էր հացահատիկը դաշտերում։ Այդ նա էր, որ ամբողջ երկիրը դարձնում էր գեղեցիկ ու երջանիկ։ Բայց իր երկար աշխատանքից հետո Շավոնդազին հոգնում էր։ Աշնանը նա հաճախ էր մագլցում լեռան գագաթը և մեծ ծխամորճը բերանին նստում այնտեղ հանգստանալու, ծխելու ու երազելու։ Ժամերով նստում էր ու ծխում։ Եվ ծուխը լցնում էր օդը թույլ մշուշով։ Քամու ոչ մի շունչ, ամպի ոչ մի կտոր... Ամենուրեք միայն խաղաղություն ու հանգիստ էր տիրում։ Հյուսիսում ապրող հնդկացիների համար սա տարվա ամենալավ եղանակն էր, այսպես ասած «հնդկական ամառը»։

Բայց հյուսիսի հեռավոր վայրերում ուղկան գցող ձկնորսների համար «հնդկական ամառը» մի նախազգուշացում էր։ Նրանք գիտեին, որ պետք է շտապեն։ Շավոնդազին շուտով քուն կմտներ և դաժան ծերունի Կաբիբոնոկան կգար ու իրենց կքշեր հեռու։ Մի առավոտ, զարթնելուն պես, նրանք տեսան, որ սառույցի մի բարակ շերտ ծածկել է լիճը, որտեղ գցել էին իրենց ուղկանները։ Շուտով սկսեց ձյուն գալ և սառույցի շերտն էլ սկսեց աստիճանաբար հաստանալ։ Ձկնորսներն արդեն լսում էին հեռվից մոտեցող Կաբիբոնոկայի ոտնաձայնը։

— Կաբիբոնոկան գալի՜ս է,— գոռում էին ձկնորսները։— Շուտով այստեղ կլինի։ Ժամանակն է հեռանալ։

Բայց Ցինգեբիսը ծիծաղեց միայն։

Ցինգեբիսը միշտ էր ծիծաղում։ Ծիծաղում էր, երբ մեծ ձուկ էր բռնում։ Ծիծաղում էր նույնիսկ, երբ ոչ մի ձուկ չէր բռնում։ Նա միշտ ուրախ էր ու երջանիկ։

— Ինչու՞ պետք է այստեղից հեռանամ,— ասաց նա իր ընկերներին։— Կկոտրեմ սառույցը և ձուկ կբռնեմ։ Ի՞նչ գործ ունեմ ծեր Կաբիբոնոկայի հետ։

Բոլորը զարմացած նրան էին նայում։ Նրանք, իհարկե, գիտեին, որ Ցինգեբիսը խելացի է, ունի նույնիսկ կախարդական ուժ և ցանկացած րոպեին կարող է դառնալ բադ։ Ահա թե ինչն էր պատճառը, որ նրան կոչում էին Ցինգեբիս «բադ»։ Բայց մի՞թե դա նրան կփրկեր սարսափելի Հյուսիսային քամուց։

— Կաբիբոնոկան քեզնից ուժեղ է,— ասում էին ընկերները։ —Նույնիսկ անտառի հսկա ծառերը խոնարհվում են նրա առաջ։ Նույնիսկ արագահոս գետերը սառչում են նրա հպումից։ Դու էլ կսառչես, եթե չկարողանաս կերպարանափոխվել արջի կամ ձկան։

Բայց Ցինգեբիսը միայն ծիծաղեց։

— Մուշտակս ու թաթմաններս կպաշտպանեն ինձ ցերեկը,— ասաց նա,— իսկ գիշերը իմ վիգվամում կրակ կանեմ։ Դե, թող համարձակվի Կաբիբոնոկան գալ։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Հեռանալու պահին ձկնորսները շատ տխուր էին։ Նրանք բոլորն էլ սիրում էին Ցինգեբիսին և, ճըշմարիտն ասած, չէին սպասում, որ նրան երբևէ կտեսնեն։

Ձկնորսները շարժվեցին դեպի հարավ։ Ցինգեբիսը մնալով մենակ՝ անմիջապես գործի անցավ։ Հավաքեց երկար գերաններ, ծառի չոր արմատներ ու ճյուղեր։ Ամեն երեկո նրա վիգվամում սկսեց կրակ վառվել։ Առավոտյան գնում էր լիճը, կոտրատում սառույցը և ձուկ բռնում։ Երեկոյան, ուրախ երգելով, վերադառնում էր ձյունով ծածկված ճանապարհով դեպի տուն՝ իր հետևից քարշ տալով ձկների մի երկար կապ։



Մի անգամ, գալով լճի մոտ, Կաբիբոնոկան, վերջապես, տեսավ Ծինգեբիսին, որը ձկների երկար կապը ձեռքին՝ տուն էր վերադառնում:

— Ո՜ւ, ո՜ւ,— գոռում էր Հյուսիսային քամին: — Ո՞վ է համարձակվել այստեղ մնալ, երբ արդեն հարավ են չվել վայրի սագերն ու բադերը: Կտեսնենք, թե ո՛վ է Սառցե երկրի տերը: Հենց այսօր՝ գիշերը կմտնեմ վիգվամդ և կհանգցնեմ վառվող կրակը: Ո՜ւ, ո՜ւ:

Գիշեր էր: Ծինգեբիսը վիգվամում նստած էր կրակի մոտ: Եվ ինչպիսի՜ կրակ: Գերաններն այնքան մեծ էին, որ նրանցից ամեն մեկը կարելի էր մեկ ամիս վառել: Նա եփում էր մի մեծ ձուկ, որը հենց այդ օրն էր բռնել: Վիգվամը լցվել էր ձկան անուշ բուրմունքով: Ծինգեբիսը հաճույքից շփում էր ձեռքերը: Այդ օրը նա մի քանի մղոն քայլել էր, և այժմ հաճելի էր նստել կրակի մոտ՝ տաք վիգվամում: Նա մտածում էր իր ընկերների մասին, որոնք ստիպված էին եղել այդտեղից հեռանալ շատ վաղ, չնայած առատ ձուկ կար:

— Նրանք կարծում են, թե Կաբիբոնոկան կախարդական ուժ ունի,— ինքն իրեն ասում էր Ծինգեբիսը,— և ավելի ուժեղ է, քան որևէ հնդկացի: Իմ կարծիքով նա սովորական մարդ է: Ճիշտ է, որ ցրտին նրա նման չեմ կարող դիմանալ. բայց նա էլ տաքությանը այնպես չի կարող դիմանալ. ինչպես ես:

Այս մտքից նա ուրախացավ և սկսեց նորից ծիծաղել ու երգել:

Ընթրիքի ժամանակ Ծինգեբիսը նույնիսկ չէր լսում այն աղմուկը, որ Հյուսիսային քամին անում էր անտառում՝ իր վիգվամի շուրջը: Ձյան հուքը գնալով ուժեղանում էր, քամին պոկում էր գետնին թափվող ձյունը և նետում վիգվամի վրա: Բայց ձյունը չէր վնասում վիգվամը, այլ ծածկում էր այն վերմակով՝ պաշտպանելով սառը քամուց: Կաբիբոնոկան շուտով հասկացավ իր սխալը և ավելի մոլեգնեց: Նա կանգնեց վիգվամի մուտքի մոտ և սկսեց բղավել: Նրա ձայնը վայրի էր ու սարսափելի, բայց Ծինգեբիսը չէր վախենում: Այնպիսի լռություն էր տիրում այդ մեծ ու անշունչ երկրում, որ Ծինգեբիսին նույնիսկ դուր էր գալիս այդ աղմուկը, որովհետև այն զանազանություն էր մտցնում այդ լռակյաց երկրում: Ծինգեբիսը սկսեց ծիծաղել ու գոռալ.

— Հա՜, հա՜, ինչպե՞ս ես, Կաբիբոնոկա: Զգույշ եղիր, քամի փչելով այտերդ կպայթեցնե՜ս...

Քամու ուժգնությունից վիգվամը ցնցվում էր: Կաշվե վարագույրը, որ ծածկում էր նրա մուտքը, մեծ աղմուկ էր բարձրացնում:

— Նե՜րս արի, Կաբիբոնոկա՛,— ծիծաղելով գոռաց Ծինգեբիսը:— Ներս արի՛, տաքացիր: Մի՛ վախենա:

Այս հեգնական բառերի վրա Կաբիբոնոկան հավաքեց իր ամբողջ ուժը, պոկեց վարագույրի կաշեգոտիներից մեկը և մուտք գործեց վիգվամ: Այնպես սառն էր նրա շունչը, այնպես սառը, որ տաք վիգվամը լցվեց մշուշով:

Ծինգեբիսը ձևացրեց, թե չի նկատում Կաբիբոնոկային: Երգելով նա ոտքի կանգնեց և մի նոր գերան գցեց կրակի մեջ: Սոճու հսկա գերանն այնքան ջերմություն արձակեց, որ նա ստիպված եղավ կրակից հեռու նստել: Նա սկսեց նայել Կաբիբոնոկային և այն, ինչ տեսավ, ստիպեց նրան նորից ու նորից ծիծաղել: Ծերուկի ճակատից թափվում էր քրտինքը, ձյունն ու սառցալուլաները նրա մա-

գերից արագորեն անհետանում էին: Կաբիբոնոկան՝ դաժան Հյուսիսային քամին, հալչում էր: Քիթն ու ականջները փոքրանում էին: Փոքրանում էր նույնիսկ նրա մարմինը:

— Մոտ արի կրակին,— ասում էր Ծինգեբիսը:
— Մոտ արի, ոտքերդ ու ձեռքերդ տաքացրու:

Բայց Կաբիբոնոկան՝ Հյուսիսային քամին, վախենում էր կրակին մոտենալ: Նա վիգվամից դուրս ցատկեց ավելի արագ, քան ներս էր խուժել: Դրսի սառը օդը նրան ուժ տվեց, և անմիջապես վերականգնվեց նրա ամբողջ ցասումը: Չկարողանալով սառեցնել Ծինգեբիսին, նա իր կատաղությունը սկսեց թափել շրջապատի վրա: Ձյունը նրա ոտքերի տակ ամրացավ, ծառերը նրա շնչից դողդողացին, բոլոր վայրի կենդանիները սկսեցին թաքնըվել նրանից:

Կաբիբոնոկան մի անգամ ևս մոտեցավ Ծինգեբիսի վիգվամին:

— Դո՜ւրս արի,— բղավում էր նա,— դո՜ւրս արի, եթե համարձակություն ունես, և կռվի՛ր այստեղ, ձյան մեջ: Այդ դեպքում կտեսնենք, թե ո՛վ է Սառցե երկրի տերը:

Ծինգեբիսը մի փոքր մտածեց. «Կրակից նա պետք է որ թուլացած լինի, իսկ իմ մարմինը տաք է: Կարծում եմ, որ կարող եմ կռվել նրա հետ: Երբ տեսնի, որ իրենից ուժեղ եմ, ինձ հանգիստ կթողնի և կմնամ այստեղ այնքան, ինչքան սիրտս ուզենա»:

Նա դուրս ցատկեց վիգվամից, և անմիջապես սկսվեց մի մեծ կռիվ: Նրանք գլորվում էին ձյան մեջ, ոտքի կանգնում, նորից թավալվում:

Ամբողջ գիշեր շարունակվում էր նրանց կռիվը: Ցրտից Ծինգեբիսը չէր տանջվում, որովհետև անընդհատ շարժվում էր, և արյունը ավելի արագ էր հոսում նրա երակներում: Նա զգում էր, որ Կաբիբոնոկան գնալով թուլանում է, և նրա սառցային շունչը այլևս քամի չէր, դա ուղղակի մի վերջին հառաչանք էր:

Վերջապես, արևը ծագելուն պես, Կաբիբոնոկան պարտվեց: Վայրի ճիչ արձակելով՝ նա շրջվեց ու փախուստի դիմեց: Հեռո՜ւ, հեռո՜ւ, դեպի հյուսիս, դեպի աշխարհի հեռավոր վայրերն էր նա փախչում: Իսկ Ծինգեբիսը կանգնած իր վիգվամի դռան առջև՝ բարձր-բարձր ծիծաղում էր, որովհետև գիտեր, որ կայտառության ու քաջության շնորհիվ էր, որ հաղթեց դաժան Հյուսիսային քամուն:

*Անգլերենից թարգմանեց*
*ԱՆԱՀԻՏ ԶԱՐՅԱՆԸ*

## ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

**Փ**արիզի նշանավոր էյֆելյան աշտարակը ձմռան համեմատությամբ ամռանը 17 սանտիմետր երկարում է:

**Ե**րեք րոպեում արևն այնքան էներգիա է տալիս, որքան մեկ տարվա ընթացքում ծախսում է երկիրը:

**Կ**ապույտ կետի նորածին ձագը կշռում է մոտ 5 տոննա, չափահաս փղից ավելի:

**Ա**շխարհի ամենափոքր պետությունում՝ Անդորայում, ռազմական բյուջեն կազմում է մոտ... 30 դոլլար: Այդ գումարը հիմնականում ծախսվում է երկրի զինված ուժերի անձնակազմի՝ 16 ոստիկանների և նրանց համար ռազմամթերք գնելու վրա:

**Բ**ուն միակ թռչունն է, որ կարող է առարկայի վրա նայել միաժամանակ երկու աչքով:

## ՏԵՍԵՔ, ԼԱ՞Վ Է

*ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Ժիրայրը մեր մոտիկ բակի
Արդեն բոյ է քաշել կարգին,
Բայց մի նրա գործին նայեք,
Տեսեք, լա՞վ է, իրեն վայե՞լ,
Երբ ձեռքն ընկած ամեն ինչով,
Մրով, ներկով թե կավիճով,
Իր անունը մեծ-մեծ անչափ՝
Մայթերին է գրում հաճախ,
Դռներին է գրում մաքուր,
Պատերին՝ նոր ու վարդագույն...



Եվ գիտե՞ք, թե հպարտ-հպարտ
Ինչ է ասում խելոքը այդ.
— Երբ ամեն տեղ կարդան «Ժիրայր»,
Տեսնես ո՞վ է, կասեն իրար.—
Բայց կարդում են մարդիկ բազում
Ու նախատող խոսքեր ասում.
Ամենքից էլ դուք կլսեք.
— Մի փնթի է, անմաքրասեր.—
Իսկ ես, որ լավ գիտեմ նրան,
Կասեմ նաև մի ուրիշ բան.
Պատերին ու մայթի վրա
Վարժ է գրում ձեռքը նրա,
Այնինչ չկա կարգին, սիրուն
Գրած մի բառ իր տետրերում:



# երկնագույն ՀՈՒԼՈՒՆՔԸ

ՄԱՐԻԱ ԿՐՑՈՒԳԵՐ

## ՄՆԱՍ ԲԱՐՈՎ, ՀՈՒԼՈՒՆՔ

Պետրիկի հետ խոսել հաջողվեց միայն հաջորդ օրը։ Բանից պարզվեց, որ ճաշից հետո մայրիկը Պետրիկին տարել էր ինչ-որ մի մորաքույրի ծննդի։ Եվ առավոտյան, հենց որ Կարոլինկային թույլ տվին բակ գնալ, նա առանց ժամանակ կորցնելու թակեց երրորդ հարկի դուռը և վճռական հայտարարեց.

— Ես քեզ բան ունեմ ասելու, շուտ, հենց հիմա։

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Պետրիկը շատ հանգիստ, կարծես բոլորովին մոռացել էր, թե երեկ ինչեր են կատարվել։

— Ոչինչ էլ չի պատահել,— պատասխանեց Կարոլինկան,— բայց կարող է պատահել։ Շուտ բակ իջիր։ Մենք պետք է լրջորեն մտածենք։

Իսկ Պետրիկն էլի իրենն էր շարունակում։

— Իսկ ի՞նչ պիտի մտածենք։

— Ինչպես թե ի՞նչ։ Պետրիկ, դու ի՞նչ է, դեռ քնա՞ծ ես։ Բա հուլո՛ւնքը,— շշնջաց Կարոլինկան։

Սկիզբը՝ նախորդ համարներում։

Պետրիկը, վերջապես, գլխի ընկավ, թե բանն ինչումն է, և խիստ անհանգստացավ։

— Հա՛։ Դե լավ, թռած գալիս եմ։ Այ միայն կաթս խմեմ ու գամ։

Եվ, երևի, նա կաթն իսկույն գլխին քաշեց, որովհետև մի րոպե էլ չէր անցել, երբ հուզմունքից շիկնած երևաց բակում։

— Դե՞, ի՞նչ կա,— հարցրեց նա հևասպառ, որովհետև աստիճանների վրայով շատ արագ էր վազել։

— Ինչ պիտի լինի, մենք պետք է խելք-խելքի տանք։ Պետք է մտածենք հուլունքի մասին։

— Նա հո լրիվ չի՞ գունատվել,— անհանգստացավ Պետրիկը։— Ճիշտն ասած, երեկ մենք նրան շատ անհանգստացրինք։ Բայց ախր առանց դրա ոչինչ չէինք կարող անել...

— Իհարկե, չէինք կարող,— համաձայնեց Կարոլինկան։— Իսկ հիմա նա շատ է գունատված։ Եվ ինձ թվում է, որ նա միայն մեկ ցանկություն կարող է կատարել։

— Իսկ կկարողանա՞ նա մի մեծ ցանկություն կատարել։

— Գուցե և կարողանա։ Միայն, գիտե՞ս ինչ, Պետրիկ, ես շատ եմ վախենում։ Չլինի՞ թե հանկարծ հուլունքը ձեռքիս մի հիմար բան ասեմ։ Չէ՞ որ հետո էլ ոչինչ չեմ կարող խնդրել հուլունքից։

— Դե, իհարկե,— համաձայնեց Պետրիկը։— Իհարկե, շատ վատ բան կստացվի։ Հանկարծ ու ասես, թե ուզում եմ իմանալ որտեղ է կոշիկի խոզանակը։ Մեկ էլ տեսար կատարվեց։

— Ախ, էլ մի՛ ասի,— հուզվեց Կարոլինկան։— Հիմա արդեն հասկանում եմ, որ ես իրավունք չունեմ անզգույշ լինել, քանի որ միայն մի ցանկություն է մնացել։

— Իհարկե, իրավունք չունես։ Նա իրո՞ք այդպես գունատ է։

— Այո, շատ գունատ է,— տխուր պատասխանեց երկնագույն հուլունքի տիրուհին,— խեղճը բոլորովին գունատվել է։ Եվ մեկ էլ գիտե՞ս ինչի համար եմ տխրում։ Իմ մի ցանկության պատճառով նա կդադարի ուրախ երկնագույն հուլունք լինելուց և անտեսանելի կդառնա։ Եվ հետո հայտնի չէ, թե հետո ում ձեռքը կընկնի։

— Դե, ուրեմն լավ մտածիր, հա՛, չսխալվես։ Ու եթե բան ես խնդրելու՝ դա պիտի ամենից կարևորը լինի։

— Ես, ճիշտ է, մտածեցի մի հիանալի տիկնիկի մասին...— անվստահ սկսեց Կարոլինկան, բայց,

## ՊԱՐԾԵՆԿՈՏԸ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ



Շախմատիստին քո ուզած  
Ղազ կդարձնեմ մի խուզած։  
Որ ծանրորդը մոտս գա,  
Իմ մեծ ուժից կսոսկա։  
Կբարձրացնեմ մի գոմեշ  
Ու կփռեմ ինչպես լեշ։  
Թե ըմբիշին չգթամ,  
Առաստաղին հուպ կտամ...  
Բայց համեստ եմ ես այնպես,  
Որ չեմ գալիս ասպարեզ։



տեսնելով Պետրիկի արհամարհանքով և ցասումով լի աչքերը, իսկույն խոսքը փոխեց,— բայց ես, իհարկե, այդ մասին լուրջ չէի մտածում։ Դա ի՞նչ մի մեծ բան է, որ հուլունքին խնդրեմ։ Ես գիտեմ, որ խնդրանքս պետք է շա՜տ, շա՜տ կարևոր բան լինի։

— Դե, իհարկե։ Մի՞թե դու չգիտես, որ կան մարդիկ, որոնք շատ ավելի կարևոր բանի կարիք ունեն, քան տիկնիկն է։

— Գիտեմ,— համաձայնեց Կարոլինկան,— դե դրա համար էլ ուզում եմ քեզ հետ խորհուրդ անել։ Ճիշտ որ ասեմ, ես այնքան էլ չեմ ուզում տիկնիկ ունենալ։ Բայց ախր ի՞նչ խնդրենք, որ հետո չփոշմանենք։

— Վա՜յ, վա՜յ, երանի՜ քեզ, Կարոլինկա։ Իսկ քեզ հայտնի՞ է, որ Լեշեկը, օրինակ, շատ է ուզում հեծանիվ ունենալ։ Բայց նա երբեք հեծանիվ չի ունենա, որովհետև ծնողները չեն կարողանա գնել։ Դու էլ շատ լավ ես հասկանում, որ հեծանիվն ավելի կարևոր բան է, քան տիկնիկը։

— Հասկանում եմ,— ոչ այնքան վստահ պատասխանեց Կարոլինկան։

— Դե, տեսնո՞ւմ ես։ Իսկ մի ուրիշ երեխայի, դե, ասենք, հարևան բակից որևէ մեկին, կոշիկներ են պետք։ Սրա՞ն ինչ կասես։

— Այդ դեպքում, զույգ կոշիկնե՞ր խնդրեմ,— անձնազոհաբար առաջարկեց Կարոլինկան։

— Մեկին կոշիկներ են պետք, մյուսին, օրինակ, գրքեր։ Ախր գիրքն էլ շատ կարևոր բան է։

— Դե, գիրք միշտ էլ կարելի է գնել,— անվստահ պատասխանեց Կարոլինկան։

— Կարելի է։ Կարելին՝ կարելի է, եթե միայն փող ունես։ Իսկ նրանք փող չունեն։

— Հա՞։

—Տեսնո՞ւմ ես։ Կամ, օրինակ, Ազատյանը։ Երազում է գնդակ ունենալ։ Իսկ Դորոտան զույգ երազում է գոգնոց կամ մի ուրիշ բան։ Ամեն մեկը մի նվիրական իղձ ունի։ Մեկինը շատ կարևոր է, մյուսինը՝ ավելի քիչ։ Ամեն մեկը մի հոգս ունի։ Օրինակ, երրորդ բնակարանի պանի Լեոնևսկայան։ Շարունակ բողոքում է, որ ոտքերն ու ձեռքերը ցավում են։ Նա անպայման կուզենա առողջ լինել։ Պատկերացնո՞ւմ ես, թե նա ինչպես կուրախանա, եթե մի օր վեր կենա բոլորովին առողջ։

— Իսկ դո՞ւ ինչ կուզենայիր, Պետրիկ,— անսպասելիորեն հարցրեց Կարոլինկան։

— Ես,— Պետրիկը մի պահ մտածեց, ապա ասաց.— Միայն թե, որ ասեմ, վրաս չծիծաղես։ Ես կուզենայի, այ այսպես, բակում կանգնել և տեսնել, թե ինչ տեղի կունենա, երբ այստեղ ապրող բոլոր մարդկանց ցանկությունները սկսեն կատարվել։ Այ թե հետաքրքիր կլինի, չէ՞։

— Ա՜խ,— հիացմունքով բացականչեց Կարոլինկան,— դա հրաշալի կլինի։ Բայց, սպասիր։ Իսկ ինչո՞ւ հենց այդպես էլ չանենք։ Չէ՞ որ դա միայն մեզանից է կախված։ Հուլունքին միայն մի բան խնդրենք։

— Այո, ընդամենը մի բան, բայց վերջինը։

— Ի՞նչ կա որ, թող հենց այդ էլ լինի մեր վերջին ցանկությունը։ Ճիշտ չէ՞, Պետրիկ։

— Իհարկե, շատ լավ կլինի։ Միայն թե հուլունքը կհամաձայնի՞։ Այդպես, «մասսայական», բոլորի համար։

— Այո, ճիշտ որ...— տխրեց Կարոլինկան։ Բայց և իսկույն տրամադրությունը բարձրացավ։— Լսիր, իսկ ինչի՞ չփորձենք որ։ Հիմա ես կփորձեմ։

Եվ Կարոլինկան վերջին անգամ ափի վրա դրեց հուլունքը և շշուկով ասաց իր ցանկությունը։ Իսկ հետո նա ամուր սեղմեց բռունցքը, ասես ուզում էր, որ հուլունքը շուտ չկորցնի գույնը։ Բայց հենց այդ պահին բակում մի այնպիսի բան սկսվեց կատարվել, որ նա հուլունքի մասին բոլորովին մոռացավ։

— Տե՜ս, տե՜ս ինչ է կատարվում,— ճչաց Պետրիկը։

Այո, իրոք որ նայելու բան էր։

Եվ այսպես, ամենից առաջ նրանց կողքով կայծակի արագությամբ սուրաց Լեշեկը՝ իր նոր հեծանիվին նստած։ Ազատյան դուրս վազեց շքամուտքից և սկսեց խաղալ իր նոր սիրունիկ գնդակով։ Պանի Լեոնևսկայան, որ բնակվում է չորրորդ հարկում, միանգամայն առողջ, ցած վազեց աստիճաններով, ասես երբեք չէր իմացել, թե ինչ է հոդացավը։

Հարևան շենքում բնակվող պանի Գենովեֆայի հետևից հանդիսավորությամբ քայլում էին տասը ճեփ-ճերմակ կատու, որովհետև, ինչպես նա խոստովանեց, ամբողջ կյանքում միայն այդ էր երազել։ Իսկ հետո Վալդեկը դուրս վազեց՝ թևի տակ վոլեյբոլի նոր գնդակը սեղմած։ Դորոտային լու-

ամուռի տակ անձի ծառեր բուսնեցին։ Իսկ Կարոլինկայի հայրիկը բակ մտավ մի նոր մոտորների վրա նստած։ Հետո Պետրիկի մայրիկը եկավ՝ գրքերի մի մեծ կապոց ձեռքին, որոնք նրան շատ էին անհրաժեշտ։ Հետո էլ Կարոլինկայի մայրիկը շնչակտուր լինելով, բայց անսահման երջանիկ, ի լուր բոլորի հայտարարեց, որ իրենց հիվանդանոցի բոլոր երեխաները առողջացել են։ Իսկ դա մայրիկի ամենանվիրական երազանքն էր։

Բոլոր բնակարաններից ծիծաղ և ուրախ աղմուկ-աղաղակ էր լսվում։

Բոլորն իրենց պատուհաններից դուրս էին ձգվել և հարևաններին պատմում էին իրենց հետ պատահած երջանկության մասին։

Հանկարծ ջութակի հնչյուններ լսվեցին. ինչ-որ մեկը գեղեցիկ, այնքան գեղեցիկ էր նվագում, որ բոլորը լսեցին և սկսեցին ականջ դնել։ Բայց դա երկար չտևեց, որովհետև բակ խուժեցին մի ռադիոավտոմեքենա և էլի մի քանի մեքենաներ, որոնց մեջ թղթակիցներ էին նստած։

— Մենք եկել ենք աշխարհի ամենանշանավոր ջութակահարի հետ հարցազրույց անելու,— ասացին նրանք։— Նա այս շենքում է ապրում, չորրորդ հարկի տասնյոթերորդ բնակարանում։

Տասնյոթերորդ բնակարանում, ինչպես որ բոլորին հայտնի էր, պան Դժիբեկն էր ապրում։ Պան Դժիբեկը փոստում էր աշխատում, և ոչ մեկի մտքով չէր անցել, որ նա աշխարհի ամենահռչակավոր ջութակահարն է։ Ճիշտ է, նա երեկոները մեկ-մեկ շատ ցածր նվագում էր, բայց ոչ մեկը չէր կարծում, որ նա իսկական արտիստ է։

— Տե՛ղ բաց արեք, խնդրում եմ։ Հիմա մենք ֆիլմ պիտի նկարահանենք՝ մաեստրո Դժիբեկի մասնակցությամբ,— բղավում էին կինոօպերատորները, որ հենց նոր էին բակ խուժել իրենց մեքենայով։



Իսկ այդ պահին չորրորդ հարկի ատրիճաններով ցած էր իջնում պան Դժիբեկը՝ ջութակը ձեռքին, գեղեցիկ ֆրակը հագին։ Նա, հուզմունքից գունատված, գլուխ էր տալիս չորս կողմը հավաքված բազմությանը։

— Տեսնո՞ւմ ես։ Նա երևի երազում էր աշխարհի ամենանշանավոր ջութակահարը դառնալ,— շշնջաց Պետրիկը Կարոլինկային։ Պետրիկը դեռ չէր հասցրել խոսքը ավարտել, երբ բակում ինչ-որ տարօրինակ մարդիկ հայտնվեցին։ Բայց այդ օրը ոչ ոք ոչ մի բանի վրա չէր զարմանում։



Բարձրահասակ, սևահեր, պղնձագույն մաշկով մարդիկ։ Սև մազերի մեջ՝ զարմանահրաշ փետուրներ, ձեռքներին՝ տոմահավկներ։

Նրանք մոտեցան Պետրիկին և, իրենց աջը մեկնելով, ժպտադեմ ողջունեցին նրան։

— Ողջունո՜ւմ ենք քեզ, մեր գեղեցիկ և քաջարի բարեկամ,— ասացին նրանք հուզված։

— Ողջունո՜ւմ եմ ձեզ, իմ վիգվամու,— պատասխանեց Պետրիկը, ասես ոչ մի արտասովոր բան չկար դրա մեջ և իսկույն դարձավ Կարոլինկային.— Թույլ տուր ներկայացնել քեզ դելավարների ցեղի ամենաքաջ մարտիկներին։ Սրան Բազեի Աչք են կոչում։

— Ողջունո՜ւմ եմ քեզ, փոքրիկ Սերնա,— սիրալիր գլուխ տվեց մեծ առաջնորդը՝ Բազեի Աչքը և ձեռքը մեկնեց Կարոլինկային։

— Հիմա հասկացա՜,— բացականչեց Կարոլինկան,— հենց սա՞ էր քո ամենանվիրական երազանքը։

— Այո,— շփոթված պատասխանեց Պետրիկը։

Բայց հետագա բացատրությունների համար էլ ժամանակ չկար, որովհետև բակում և տներում շարունակվում էին ավելի արտասովոր բաներ կատարվել և ցնծությանն ու բերկրանքին էլ չափ ու սահման չկար։

Վերջապես, բանն այնտեղ հասավ, որ բնակիչներն ատրիճաններ բերեցին և հենեցին «Ծաղիկների փողոց» ցուցանակը կրող շենքի պատին։

— Այս ինչ են ուզում անել,— զարմացած հարցրեց Կարոլինկան։

— Սպասիր, հիմա կտեսնենք,— խոսեց Պետրիկը: — Տես, նրանք հանում են ցուցանակը: Այո, բայց փոխարենը նորն են փակցնում: Սպասիր, սպասիր, այն ի՞նչ է գրված վրան. «Երջանիկ նըրբանցք»: Տեսնո՞ւմ ես, Կարոլինկա, հիմա այստեղ երջանիկ մարդիկ են ապրում: Դու գո՞հ ես:

— Իհարկե, գոհ եմ,— հազիվ շշնջաց Կարոլինկան: Նա էլ ոչինչ չկարողացավ ասել: Միայն թե այնպես տարօրինակ էր զգում իրեն, որ նույնիսկ լաց լինելու ցանկություն զգաց:

— Մի՞թե կարելի է ուրախությունից լաց լինել,— հարցրեց նա Պետրիկին:

— Ինձ թվում է, որ կարելի է,— պատասխանեց Պետրիկը, նույնպես ինչ-որ տարօրինակ ձայնով:— Չեմ հասկանում, թե ինչ է կատարվում ինձ հետ, կոկորդս մի տեսակ բոր է գալիս:

— Իսկ ես...— ուզեց խոսել Կարոլինկան, բայց խոսքը մնաց բերանում, որովհետև զգաց, որ դեմքի վրայով ինչ-որ տաք բան է սահում: Նա ձեռքը բարձրացրեց, որ մաքրի այտը, բայց հիշեց, որ քիչ առաջ հուլունքն ափի մեջ էր: Կարոլինկան բացեց բռունցքը, բայց հուլունքը չկար: Եվ միայն ցողի մի կաթիլ էր փայլում նրա ափի մեջ: Եվ դժվար էր ասել՝ հուլո՞ւնքն էր այդ, թե՞ Կարոլինկայի արցունքի կաթիլը: Իսկ հետո այդ ջինջ կաթիլը վայր ընկավ և կորավ խոտերի մեջ:

— Հուլունքի՜կս,— շշնջաց Կարոլինկան:

Եվ նրանք երկուսով սկսեցին խոտերի մեջ փընտրել: Բայց այնպես էլ չգտան:

Գուցե նրանց հաջողվի գտնել հուլունքը: Կամ մի ուրիշը գտնի: Հանկարծ ու ձեզանից որևէ մեկը: Չէ՞ որ նախօրոք ոչինչ հայտնի չէ, ամեն ինչ էլ հնարավոր է այս աշխարհում: Ո՞վ իմանա, կարող է պատահել նաև, որ հուլունքը նորից երկնագույն լույս արձակելով վերադառնա Կարոլինկայի և Պետրիկի մոտ, և նորից սկսվեն նրանց արտասովոր արկածները: Բայց հնարավոր է, որ այդ արկածները ձեզանից մեկին են սպասում: Միայն թե իմանան այդ երկնագույն հուլունքը գտնելու հնարը...

Լեհերենից թարգմ. Հ. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ



## ՀԱԶՎԱԳՅՈՒՏ ՈՐՍ

Մեր բնակարանը գտնվում է Ներքին Շենգավիթի Ճորակառույց շենքերից մեկում: Մի օր ես որոշեցի հետիոտն արշավ կազմակերպել՝ Շենգավիթ—Զարբախ—Եղիջա—Զարբախ—Շենգավիթ: Արշավի գլխավոր նպատակն էր ծանոթանալ այդ վայրերին և նոր կենդանիներով հարստացնել իմ բնագիտական անկյունը: Ընկերներիցս երեք հոգի նույնպես ցանկություն հայտնեցին մասնակցել այդ արշավին: Առավոտյան ժամը տասին մենք ճանապարհ ընկանք:

Ամբողջ ճանապարհն անցնում էր գետակի ափով: Ամենուրեք աշխույժ եռուզեռ էր: Մի տեղ՝ մրջյունն էր ցորենի հատիկը գլորում բույնը, մեկ ուրիշ տեղ վայրի մեղուներն էին հավաքվել իրենց բնի վրա, մի այլ տեղ դաշտամկներն էին պայքարում հացի կտորի համար:

Մենք ականատես եղանք մի զարմանալի տեսարանի: Մի մեծ դաշտամուկ մտել էր իր բույնը և ներս չէր թողնում ձագուկին, որը հուսահատ ծըվծըվում էր: Երևի փոքրիկը մի վատ բան էր արել, և մայրը ներս չէր թողնում:

Հազիվ էինք շրջվել և մի փոքր հեռացել, երբ մոտիկ թփերից դուրս թռան երկու մողես, իսկ նրանցից հետո երևաց դարձյալ մեկը: Ըստ երևույթին վերջին մողեսը հետապընդում էր փախստականներին: Եվ իրոք, փախչող մողեսներից մեկը տեսավ իր հակառակորդին ու վազեց նրա կողմը: Սկսվեց ուժեղ և կատաղի պայքար: Մողեսները քաշքշում էին իրար և թավալվում հողերի մեջ: Հանկարծ նրանցից մեկը, որն, ինչպես երևում էր, ավելի ուժեղ էր, կարողացավ բռնել մյուսի գլխից: Ես նետվեցի դեպի մողեսները, որոնք կռվով տարված՝ չնկատեցին ինձ: Վերցրի երկուսին էլ և իրարից անջատելով՝ գցեցի ջուրը: Ջրից սթափվելով, մողեսները լողացին տարբեր ուղղությամբ և դուրս եկան ափ: Նրանք այլևս չէին կռվի, որովհետև գտնվում էին տարբեր ափերում:

Մենք շարունակեցինք ցած իջնել: Երբ հասանք Զարբախի դաշտը, որոշեցինք մի փոքր հանգստանալ: Հանկարծ տատասկների միջից լսեցի թեթևակի մի խշշոց և մեքենաբար նետվեցի դեպի թփերը, բայց կես ճանապարհին կանգ առա: Իմ անհանգստանալն անտեղի չէր: Թփերի մեջ երևաց նախ մի գեղեցիկ օձային գլուխ, ապա ամբողջ







*Երևանի № 110 դպրոցում պահվում է հանքային հանածոների 70 նմուշ։ Դրանք բոլորն էլ Սուրեն Հայրապետյանն է հավաքել հայրենի լեռներից և նվիրել դպրոցին։*

*Իսկ նրանց բնակարանի սենյակներից մեկը կենդանաբանական այգու տպավորություն է թողնում։ Այնտեղ դրված են բազմաթիվ վանդակներ, որոնց մեջ դուք կտեսնեք հողմավար բազեներ, զանազան դայլայլող թռչուններ, ջրամկներ, ավազամկներ և այլն։ Վանդակներից վերև ազատ թառել է լորորս բազեն։ Նա հաճախ ագահաբար աչքերն է չռում խեղճ լորի վրա. մի վայրկյանում կհափշտակեր նրան, եթե լորը վանդակում չլիներ։ Ծերունի կրիան և ջահել ոզնին ազատ զբոսնում են բոլոր սենյակներում։*

*Կենդանական աշխարհի նկատմամբ ունեցած բուռն սիրուց Սուրենի գլխում ծագեց մի նոր միտք. նա սկսեց ուշի-ուշով ուսումնասիրել կենդանիների, թռչունների ու սողունների կյանքը և գրի առնել իր դիտողությունները։*

*Չնայած այդ ամենին, Սուրենը, երբեք ետ չի մնացել դասերից, նա քայլում է 10-րդ դասարանի ուսման առաջավորների շարքում։*

*Տպագրում ենք մի հատված նրա բնագիտական հուշատետրից։*

օձը։ Սովորական լորտու էր։ Որքա՜ն գեղեցիկ էր և որքա՜ն հրապուրանք կար նրա մեջ։ Լորտուի երկարությունը հասնում էր 90 սմ.-ի։ Ես վերցրի լորտուն և սկսեցի տղաներին մեկ առ մեկ բացատրել նրա բոլոր հատկանիշները.

— Տղանե՛ր, լորտուն անվնաս և օգտակար սողուն է, սակայն կան մարդիկ, որոնք սխալմամբ լորտու են անվանում անոտ, խոշոր մողես դեղնափորիկին, որն զգալի օգուտ է տալիս մարդկանց, ոչնչացնելով մեծ թվով վնասատու կրծողներ, թունավոր օձեր ու հիվանդություն տարածող միջատներ։ Լորտուն սնվում է գլխավորապես դոդոշներով, գորտերով, մանր ձկներով և երբեմն էլ միջատներով, որդերով, տրիտոններով, մանր կրծողներով և այլն։ Լորտուները տարածված են Հայաստանի կիսաանապատային շրջաններում։ Ապրում են դանդաղ հոսող գետերի ու առուների ափերին, որոնք ծածկված են խիտ թփերով, լճերի մոտ և մարգագետիններում։ Նրանց երկարությունը հասնում է մինչև մեկուկես մետրի։ Էգ լորտուն հուլիսին դնում է 15—36 ձու։ Ձվերը դնում է բնափայտի, աղբակույտերի ու մամուռի մեջ։ Ձվերի մասին հոգ չտանելով, էգը թողնում է և հեռանում։ Մոտ մեկ ամիս հետո ձվերը պատռվում ու դուրս են գալիս փոքրիկ լորտուներ։

Առաջին ցրտերն ընկնելուն պես՝ լորտուն խրցկըվում է բնի մեջ կամ 40 սմ. խորությամբ հողի ճեղքերը և այդպես ձմեռում մինչև գարուն։ Ձմեռում է լորտուն սովորաբար միայնակ։

Երբ վերջացրի իմ հակիրճ բացատրությունը, սկսեցինք դիտել նոր բռնած լորտուն։ Մեջքի կողմից մարմնի երկարությամբ ձգվում էին երկու դեղնավուն շերտեր։ Մարմինը շագանակագույն էր և ծածկված էր իրարից որոշ հեռավորության վրա գտնվող գորշ բծերով։ Փորի կողմից դեղնավուն էր, ծածկված երկայնակի գեղեցիկ նախշով։ Գլխի վրա կար երկու դեղին բիծ։

Մենք լորտուն գցեցինք արկղի մեջ, լողացանք փոքրիկ գետակում և սկսեցինք դանդաղ վերադառնալ տուն։

Գետակի ափին ես տեսա երկու կրիա, որոնք նստել էին եղեգների մեջ։ Մեզ տեսնելով՝ կրիաները ջուրը նետվեցին։ Մենք կրիա շատ ունեինք, ուստի հարկ չհամարեցինք նրանց հետապնդել։ Կամաց-կամաց մոտենում էինք նորատունկ մի անտառի։ Որոշեցինք մի փոքր հանգստանալ։ Նստեցինք մի գեղեցի՜կ բացատում և սկսեցինք դիտել մեր շուրջը։ Ծառերից մեկի վրա կար փոքր և բարակ ճյուղերից պատրաստված մի կաչաղակի բույն։ Բնի տերերը՝ հայր ու մայր կաչաղակները,

(Շարունակությունը՝ 20-րդ էջում)











## ՍԿՅՈՒՌՆԵՐԸ ԳՐՈՀՈՒՄ ԵՆ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՎՐԱ

Անցած դարի վերջին Ուրալի Նիժնի Տագիլ քաղաքի բնակիչները ականատես եղան մի անսովոր երևույթի: Քաղաքը լցվել էր սկյուռներով: Նրանք գրոհում էին մերթ մեկ-մեկ, մերթ՝ խըմբերով, վազում էին փողոցներով, ցատկում ցանկապատերի վրայից, ներխուժում տներն ու բակերը, թռչկոտում տանիքների վրա: Սկյուռները ոչ մարդկանցից էին վախենում, ոչ էլ՝ շներից և այդ պատճառով իրար հետևից կործանվում էին: Շները պատառոտում էին, մարդիկ խըփում փայտերով, քարերով, մըտրակներով, ինչով պատահեր: Գիշերը սկյուռները թաքնվում էին, իսկ լուսաբացին նորից ճամփա ընկնում: Երեք օր նրանք պաշարեցին Տագիլը:

Նույնիսկ Չուսովայա լայն և արագահոս գետը չկարողացավ կանգնեցնել սկյուռներին: Նըրանք նետվում էին սառը ալիքների մեջ և լողում դեպի մյուս ափը: Հոսանքը քշում էր նրանց, ջրապտույտները պտտեցնում էին կարուսելի նման, սակայն սկյուռները խելագարի պես անընդհատ թռչում էին գահավեժ ափից:

Մի մարդ, որ հենց այդ ժամանակ նավակով լողում էր Չուսովայայի վրա, պատմում է. «Որոշ սկյուռներ բոլորովին ուժասպառ էին եղել, մերթ ջրից դուրս էին նայում, մերթ՝ սուզվում և նորից դուրս նայում, իսկ այդ ընթացքում հոսանքը նրանց տանում էր: Հոգնած սկյուռներին ես մեկնում էի թիերը: Եվ նրանք անմիջապես թիերի վրայով բարձրանում էին ինձ մոտ, նավակ: Նստում էին հատակին և դողում:

Երբ նավակը լողաց դեպի մեծ նավը, սկյուռներն անմիջապես բարձրացան նրա վրա: Ամբողջ ժամանակ խեղճերը հանգիստ նստած էին: Բայց հենց նավը մոտեցավ ափին, սկյուռներն անմիջապես թռան ավազի վրա և փախան ավելի հեռու: Նրանցից շատերը զոհվեցին, բայց շատերն էլ անցան գետը և շարունակեցին ճանապարհը»:

Հետագայում արդեն պարզվեց, որ Նիժնի Տագիլի վրայով անցել էր ոչ թե սկյուռների գըլխավոր բանակը, այլ նրա, այսպես ասած, թևային ջոկատը:



Բանակն անցել էր Տագիլից 8 կմ. այն կողմով:

Մի քանի տարի առաջ սկյուռները այդպիսի գրոհ կազմակերպեցին Մերձբալթյան քաղաքների վրա:

Հայտնի է, որ սկյուռները վերաբնակվում են միայն կերի պակասության՝ սոճու կոների անբերքատվության պատճառով: Գազանիկները փնտրում են կերով ավելի հարուստ նոր անտառներ: Եթե սկյուռները շատ են բազմանում, ապա սովը նըրանց համար ավելի սարսափելի է դառնում: Բացի դրանից, անտառային հրդեհները, որոնց հետևանքով այրվում են տայգայի հսկայական տարածությունններ, գազանիկներին քշում են իրենց հարազատ վայրերից:

Սակայն կա և այսպիսի գիտական ենթադրություն. քոչվոր սկյուռները իրենց պահում են, ինչպես համաճարակով վարակվածներ և հաճախ, կարծես, նըրանք փնտրում են մահ, այլ ոչ թե փրկություն: Սկյուռները բռնված են «խելագարության վիրուսով»— պնդում են «ճակատագրական միգրացիայի» թեորիայի կողմնակիցները: Եվ սովորաբար, որպեսզի նրանք հիմնավորեն իրենց դատողությունները, որպես օրինակ, նկարագրում են սկյուռների հսկայական երամի ողբերգական վախճանը Ենիսեյ գետում: Այդ դեպքը տեղի է ունեցել շատ վաղուց: 1847 թ. աշնանը Կրասնոյարսկից ոչ հեռու, սկյուռների անթիվ մի հորդա արևելքից մոտեցավ Ենիսեյին: Մեկը մյուսի հետևից սկյուռները թռան փոթորկահույզ հորձանքի մեջ և համարյա բոլորը կործանվեցին:

Նման «անմտություն» երբեմն նկատվում է նաև ուրիշ կենդանիների մոտ: Մի անգամ 2000-անոց կիսավայրենի կովերի և եզների մի հոտ, որոնք արածում էին Արգենտինայի արոտավայրերում, առանց որևէ նկատելի պատճառի հանկարծ նետվեցին Պարանա գետը և խեղդվեցին: Հարավային Ամերիկայում պատահեց նաև այսպես. 8 հարյուր կոկորդիլոսներ թողեցին իրենց հարազատ Ամազոնի գետաբերանը և լողացին դեպի բաց ծով, դեպի մահ:

Գլխավոր դրդապատճառը կենդանաբանները համարում են կերի պակասությունը:

# ՎԱԽԻ ՀՈՏԸ

Որոշ գիտնականներ ենթադրում են, որ երբ մարդը սաստիկ վախենում է, արյան մեջ առաջանում են այնպիսի նյութեր, որոնք մաշկի միջոցով արտաթորվելով, ազդարարում են այդ մասին: Որոշ գազաններ «վախի հոտը» զգում են: Եթե մարդը վախենում է՝ հարձակվում են սպառնացին: Իսկ եթե նա չի վախենում և շուրջը չի տարածում վախի հոտը, գազանները պոչները քաշում են ոտների արանքը և նահանջում:

Դա այդպես է, թե ոչ, ցույց կտա հետագա ուսումնասիրությունը: Առայժմ ապացուցված է, որ որոշ կենդանիներ, վտանգ զգալիս կամ գազանի բերանն ընկնելիս, իրենց շուրջը տարածում են եթե ոչ վախի, ուրեմն տագնապի հոտ:

Մի գիտնական, ճերմակ խարակաձկների վտառին վարժեցրել էր որոշակի մի տեղ հավաքվել: Նա այդտեղ էր ձկներին կերակրում: Հետո որոշեց մի խարակաձկան վրա նշան անել. բռնեց, ասեղով թեթևակի քերծեց նրա մի մկանը, որի քայքայումից ձկան պոչը սևանում է, և նորից գցեց ջուրը: Եվ, հենց որ նա մոտեցավ վտառին, տեղի ունեցավ մի անսպասելի բան: Խարակաձկները տագնապահար ամեն մեկը մի կողմ փախան և թաքնվեցին հատակի ավազների մեջ: Հետո վտառը նորից հավաքվեց և այդ վայրից հեռացավ:

Այդ դեպքը գիտնականներին ստիպեց մտածել. «Արդյոք կարո՞ղ էր վիրավոր խարակաձուկը որևէ բան հայտնել իր ցեղակիցներին: Ոչ: Այդ դեպքում ի՞նչը նրանց վախեցրեց: Գուցե վիրավորը ցավից բղավո՞ւմ էր»:

Բռնեցին էլի մի խարակաձուկ: Կտոր-կտոր արեցին և գցեցին ջուրը: Խարակաձկները դարձյալ տագնապահար փախան: Գուցե նրանց վախեցրեց սատկած ձկան տեսքը:

Էլի մի խարակաձուկ կտոր-կտոր արեցին, ծեծեցին, հյութը քամեցին և կաթիլ-կաթիլ լցրեցին ջրի մեջ: Դարձյալ խուճապ բարձրացավ:

Այդպես պարզվեց, որ խարակաձկների և նույն ցեղին պատկանող գետային ձկների մաշկը (հետագայում պարզվեց, որ հատկապես մաշկը), վնասվելու դեպքում, արտադրում է ինչ-որ նյութեր, որոնց հոտից մյուս ձկները խուճապահար փախչում են:

Նկատել են նաև, որ խարակաձկան տված տագնապի քիմիական ազդանշանը, վախեցնում է նաև այդ ցեղին պատկանող այլ ձկների: Որքան հեռանում է ցեղական կապը, այնքան վատ են «հասկանում» միմյանց: Իսկ տարբեր ցեղի ձկները բոլորովին չեն «հասկանում»:

Տագնապի յուրահատուկ հոտ է իր շուրջը տարածում ամերիկյան անտիլոպը: Նրա գավակի վրա, երկար, սպիտակ բրդի տակ թաքնված են այն գեղձերը, որոնք և արտաթորում են սուր հոտ ունեցող նյութը: Նույնիսկ մարդը մի քանի հարյուր մետրի վրա այդ հոտը զգում է, իսկ անտիլոպները՝ կիլոմետրերի վրա:

Մրջյունները տագնապն ազդարարում են իրենց թթվուտթյան օգնությամբ: Դա նրանց մոտ այսպես ասած՝ «վախի հոտի» դեր է կատարում:

Տագնապի ժամանակ մրջյուններից մեկը ծնոտը բացած, փորը բարձրացրած պտտվում է տեղում: Մերթընդմերթ նա դուրս է ցփնում մրջնային թթու: Նրա այդ շարժումները և թթվի հոտը մրջնանոցում խուճապ են բարձրացնում: Մրջյունները սկսում են գժվածի պես վեր ու վար վազվզել մրջնանոցի բոլոր հարկերով, վախով թունավորված մթնոլորտին ավելացնելով իրենց թույնի կաթիլները, որը ավելի է սաստկացնում խուճապը:

Մրջյունների մի մասը գրանից հետո սկսում է թշնամու հարձակումը ճնշելու: Մյուսները, հավաքվում են այն սենյակների մոտ, որտեղ ձվերն են դրված, և դրանք քարշ են տալիս ավելի ապահով ապաստարան: Մի մասն էլ սկսում է թշնամու ավերածությունները վերանորոգել:




Տրավանկուրա քաղաքի (Հնդկաստան) մահառաջա Տիրունալ Սվատին վերջերս տոնեց իր ծննդյան 150-րդ տարեդարձը: Հետաքրքիրն այն է, որ դեռևս անցյալ դարում նա համարվում էր ամենածեր բանաստեղծ-երգասացը:



Ֆրանսիական ազգային վիճակագրական ինստիտուտի վկայությամբ, հեռուստացույց դիտողների 54 տոկոսը հաղորդումների ժամանակ քնում է:

(Սկիզբը՝ 17-րդ էջում:)

դուրս էին հանել իրենց ծագերին թռիչքային վարժությունների։ Հան-
Հանգստից հետո մենք շարունակեցինք մեր ճանապարհը։ Հան-
կարծ մի դաշտամկան բնի անցքում նկատեցի օձի մարմին, որը տեսանելի չէր անփորձ աչքի համար. օձի գույնը շատ լավ ներդաշնակում էր շրջապատի գույնին։ Իմ մտքում ծագեց մի հարց. «Զլի՞նի թե իժ է»։ Հարկավոր էր զգույշ լինել։ Ես անձայն մոտեցա և սկսեցի ուշադիր նայել։ Դարչնագույն էր, ծածկված բազմաթիվ բծերով, նախշերով և կետերով։ Թեփուկները կանոնավոր բազմանկյան տեսք ունեին։ Դրանց մակերեսը հարթ էր, որը ցույց էր տալիս օձի ոչ թունավոր լինելու հատկանիշներից մեկը։ Ես դրանից սրտապնդվելով, բռնեցի օձի մարմնից և սկսեցի դուրս քաշել։ Ինձ մի փոքր շփոթեցրեց օձի կարճ ու հաստ պոչը, բայց հիշեցի մի բան. «եթե օձի վրա կա թունավոր չլինելու հատկանիշներից թեկուզ և մեկը, ապա այդ օձը թունավոր չէ»։ Այլևս չմտածելով զգուշության մասին, ես միանգամից դուրս հանեցի օձը և, ա՛յ քեզ զարմանք։ Ես սպասում էի որ հիմա կտեսնեմ օձի մեծ գլուխը և պարանոցը, մինչդեռ տեսա մի արտասովոր գլուխ, իսկ պարանոցը չէր երևում, որովհետև մարմինը միանում էր գլխին։ Գլուխը շատ փոքր էր մարմնից, դունչը՝ կլորավուն։ Կլորավուն էր նաև գլուխը և այնպիսի կազմություն ուներ, որի շնորհիվ կարող էր փորել հողը և այնտեղ սնունդ փնտրել։

Տղաները մոտեցան ինձ։ Մենք սկսեցինք ուշիուշով դիտել հազվագյուտ որսը։ Թեփուկները միանում էին իրար այնպես, որ մարմնի վրա նույնիսկ կես միլիմետրի չափ բաց տեղ չէր մնում։ Մեջքի վրայով անցնում էր մի գեղեցիկ նախշ, որ պոչից սկսած վեր էր ածվում մի քանի առանձին բարակ շերտերի։ Փորը բաց դեղին էր, որի մեջտեղով, երկայնակի անցնում էր աղյուսագույն թեփուկների մի շերտ։ Աչքի բիբը ճեղքանման էր։ Վերևի ծնոտը ներքևի ծնոտից երկար էր։ Օձի երկարությունը մոտ 60 սմ. էր։

Օձը չէր փորձում կծել և շարունակ փաթաթվում էր ձեռքիս դաստակին։ Իսկ երբ դրեցի գետնին, նույնիսկ փախչելու փորձ էլ չարեց։ Սկսեց սողալ հողի վրայով կրիայից էլ դանդաղ։ Երբ նորից բռնեցի, դարձյալ չդիմադրեց։ Սկզբում ես սխալմամբ այդ օձը շփոթեցի մի ուրիշ օձի հետ, որովհետև հիմքեր ունեի շփոթվելու, բայց հետո միայն իմացա, որ տափաստանային վիշապ է։

Ես շատ գոհ մնացի այդ օրվա արշավից. չէ՞ որ իմ բնագիտական անկյունը հարստացավ կովկասյան վիշապով...

*ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ ՍՈՒՐԵՆ*
*(Երևանի № 110 դպրոցի աշակերտ)*






Խմբագիր՝ ՍԱԳ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06,*

*ՎՖ 10203, Պատվեր 1376, Տպաքանակ՝ 13 500, Տպագրական 5 մամուլ, Ստորագրված է տպագրության 6/VII 1965 թ.: ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91,*
Գինը 20 կ.






ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ԱՆՈՒՇԱՎԱՆ
ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Այս համարի հետ
տրվում է անվճար
հավելված՝
հոկտեմբերիկների
համար:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ԻՆՉՈ՞Ւ «ԱՊՐԵՍԸ» ՉԵՆ ԳՐՈՒՄ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Լալան ուրախ-ուրախ
Դպրոցից էր եկել.
Տատիկն ասաց.—Մատաղ,
Քանի՞ «5» ես բերել:

— Վա՜յ, տատի ջան, այսօր
Այնքան շա՜տ է, գիտե՞ս.
Չորս հատ «5» եմ բերել,
Երեք հատ էլ «ապրես»:

Բայց «5»-երն են միայն
Գրված օրագրում,
Տեսնես ինչո՞ւ, տատի,
«Ապրեսը» չեն գրում:



ԶԱՐԶԱՆԴ ԴԱՐՅԱՆ

# ՀԱՍՄԻԿ

Այնքան էլ փոքրիկ չկարծեք նրան: Ընդամենը տասներկու տարի հետո միջնակարգը կավարտի և երկար հյուսքերով լուսանկարն ու դիմումը կտանի ուղիղ համալսարան. իսկ հիմա դպրոց չեն ընդունում, երբ՝ փոքր է, չի՞ կարող սովորել: Դե նրանք ի՞նչ իմանան, որ Համիկը մեծ եղբորից բոլոր տառերը սովորել է և, եթե մայրիկից չվախենա, իր անունը կգրի թղթե անձեռոցիկների, պատերի ու մաքուր լվացած հատակի վրա: Ուսուցիչներն ի՞նչ իմանան, որ նա շատ տառանավորներ գիտի և մեկիկ-մեկիկ ճանաչում է «Այբբենարանի» շներին, կատուներին, խորամանկ աղվեսներին ու շլդիկ նապաստակներին, ամեն օր հետները զրուցում ու խաղում է, ինչպես իր փոքր եղբոր՝ Արայիկի հետ: Օ՛յ, այդ Արայիկը որտեղի՞ց եկավ, խցկվեց այս պատմության մեջ: Է՛հ, թող գա, ես էլ, ինչ որ գիտեմ նրա մասին, կասեմ: Կարծում եք միայն ափսեներ ու բաժակնե՞ր է ջարդում, քրոջ տիկնիկի ձեռքերն ու ոտքե՞րն է պոկում, դարձնում հաշմանդամ, հեռուստացույցի պատուտակնե՞րն է հանում ու մուլտիպլիկացիոնի խեղճ կատվի վրա լու՞յսը հանգցնում, չի թողնում մուկիկին անուշ անի: Այդքանը դեռ ոչի՜նչ: Որ իմանաք որքան ծույլ՛ն է նա: Տառերի հետ գլուխ չունի: Երեք տարի է, ինչ մայրիկը նրան Զանգվի ջրերից հանել, տուն է բերել, բայց դեռ չգիտի, որ «Այբբենարանն» ու իր անունը նույն տառով են սկսվում: Հա թող Համիկը ցույց տա ու սովորեցնի: Թվաբանությունից հո իսկի բան չգիտի: Փորձիր հարցնել. «Արայիկ, հինգ խնձոր ունես, երկուսը տաս Համիկին, քեզ՝ ինչքա՞ն կմնա»: Ոտքերը կխփի հատակին ու կճղճղա.

— Համիկին չե՛մ տա:

Կամ վեց ընկույզ տուր ձեռքը և ասա,

որ Համբիկի հետ կես անի։ Նա չորսը իրեն կվերցնի, երկուսն էլ կպահի իր ավտոմեքենայի թափքի մեջ։ Այնինչ Համբիկը մինչև հարյուր կարող է կես անել ու գումարել։ Մի անգամ մայրիկից մի ոտանավոր էր սովորել, որ սկսվում էր այսպես.

Փիղը մտավ կրկեսը,
Բռնեց կրկեսի կեսը:

— Մայրիկ, իսկ եթե երկու փիղ մտնեն, ի՞նչ կլինի։

— Ի՞նչ կլինի, բալիկ ջան,— չհասկացավ մայրը։



— Ամբողջ կրկեսը կլցվի և մեզ նստելու տեղ չի մնա,— պատասխանեց աղջիկը։

Ահա թե ինչքա՜ն շատ բան գիտի Համբիկը։ Բայց արի տես, դպրոց չի գնում։ Իսկ քանի որ դպրոց չի գնում, նրա դպրոցական ընկեր-ընկերուհիները՝ Աստղիկը, Գոհարը, Վարդանը, Կարենը, Վարդուհին և էլի ուրիշներ, դեռ նրան չեն ճանաչում։ Հետո նրանք, իհարկե, կճանաչեն, կսիրեն իրար, իսկ մինչ այդ, թող նրա՛նց համար կարդան այս փոքրիկ զրույցները ոչ այնքան էլ փոքրիկ այս աղջկա մասին, որ երբ առաջին անգամ դպրոցում տեսնեն կարմիր ժապավեններով մազերը փնջած մի աղջիկ, ասեն.

— Բարև, Համբիկ, մենք քեզ վաղու՜ց ենք ճանաչում...

## ԵՐԱԶ

Այդ առավոտ մեծ եղբայրը գյուղից եկավ՝ մատնաչափ մի շնիկ հետևից գցած։ Հենց այդպես էլ հասկացեք՝ մատնաչափ, միայն ոչ թե Համբիկի, այլ հայրիկի միջնամատի չափ։ Համբիկը դեռ մուշ-մուշ քնած էր։ Դե որ դպրոց չի գնում, ինչու՞ շուտ վեր կենա, բայց, ա՜յ քեզ զարմանք, քնի մեջ, աչքերը փակ տեսնում է շնիկին՝ ճերմա՜կ-ճերմա՜կ, բրդոտ դնչով, մատնոցե ոտիկներով ու կախ ընկած երկար ականջներով։ Ներս է ընկել սենյակն ու վազվզում է այս ու այն կողմ՝ ցեխոտ ոտիկների հետքը դաջելով հատակին։ Մայրիկն էլ է տեսնում ու, փոխանակ բարկանալու, ննջարանից դուրս գցելու փնթի շանը՝ ծիծաղում է։ Ինքը՝ Համբիկն էլ է ծիծաղում։ Ախր շատ ուրիշ տեսակն է այդ շնիկը։ Ահա աչքն ընկավ Համբիկի խաղալիքներին։ Ինչքան էլ շա՜տ են։ Վազ տվեց, բռնեց առաջին պատահած աքաղաղի ոտքերից ու քաշքշեց հատակի վրա։ Իսկ աքաղաղը ձայն չի հանում։ Իբր՝ դու ո՞վ ես, հաչան-փչան, որ ես քեզանից վախենամ։ Այդ արհամարհանքը սաստիկ բարկացրեց շնիկին։ Ինչպե՜ս թե հաչան-փչան անվանեն իրեն։ Եվ աքաղաղի փափուկ կատարը բերանն առավ, հետո էլ կուցը մի լավ տրորեց ու դեն նետեց։ Դու մի ասի, հիմա էլ աչքն ընկել էր շլդիկ նապաստակին։ Սա թեև շատ մեծ էր, ուռած-փքված, ասես երեք շնիկ կուլ տված լիներ միանգամից, բայց շնիկը չվախեցավ, հարձակվեց վրան, քուրջի գլխիկների չափ ատամները խրվեցին շլդիկի ականջի մեջ ու պոկ չեկան։ Ոտքերը գետնից կտրվեցին, և շնիկը մնաց օդում ճոճվելով։ Ա՜յ թե նայելու բան է։ Համբիկն ու մայրիկը



ծիծաղից թուլանում են: Միայն շլդիկ նապաստակն է անտարբեր, աչքն անգամ չի թարթում:

— Ես քեզ կուտեմ, հա՜...— ատամների միջից մի կերպ գոռաց շնիկը:

Երևի կարծում էր, թե նապաստակը լեղապատառ կփախչի ու իր ատամները կըպոկվեն նրա ականջից:

— Կե՜ր, թե կարող ես, անու՜շ լինի,— պատասխանեց շլդիկն ու գլուխն ավելի բարձրացրեց: Շնիկն էլ, իհարկե, հետը բարձրացավ և այժմ օդի մեջ ճոճվում էր ճոճանակի պես: Ապա նապաստակը դանդաղ ոտքի կանգնեց, իսկ շնիկի գլուխը քիչ էր մնում առաստաղին հասներ:

— Ու՞ր ես տանելու ինձ,— սարսափեց շնիկը:

— Թագավորի մոտ:

— Ո՞վ է ձեր թագավորը:

— Էլ ո՞վ կլինի՝ առյուծը:

Այս որ լսեց՝ շնիկի ծնոտը թուլացավ ու նա, թը՛մփ, ընկավ հատակին:



Իսկ առյուծն արդեն կանգնած էր նրա գլխավերևում: Դա շնիկից փոքր էր, շա՜տ փոքր, երկու օր առաջ էր մայրիկը գնել ու դրամապանակի մեջ դրած՝ տուն բերել: Արի տես, շնիկը նրա երկյուղից ուշագնաց եղավ:

— Ի՞նչ աղմուկ է, առավոտ շուտ այս ո՞վ է խանգարում մեր հանգիստը,— շնիկի ականջին որոտաց առյուծի ձայնը:

— Ըը՜... Ոչի՜նչ, առյուծ եղբայր... Ոչինչ... ես... ըը՜.. հենց այնպես՜... խաղում էի,— ուշքի գալ-վ հազիվ կմկմացրեց շնիկը և կուչ եկավ առյուծի ոտքերի մոտ:

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

## ՀԱՆԵԼՈՒԿ

Երբ մարդու հետ ընկերացան,
Իրենց չվելը մոռացան,
Մարդուց առան կեր, կուտ ու ջուր
Եվ ավելցին միս ու փետուր:

(Տնային թռչուններ)

— Հը՜մ, խաղո՜ւմ էիր: Ժամանակ ես գտել: Իսկի չես էլ մտածում, որ վաղուց մսի համ չեմ առել: Դե պատրաստվիր, ես քեզ պիտի ուտեմ: Մի՛ վախեցիր, ողջ-ողջ եմ կուլ տալու, որ ոչ մի տեղդ չցավի:

— Վա՜յ, վա՛յ, վա՛յ...— կաղկանձեց շնիկը:

— Իզուր մի՛ ողբա, միևնույն է, պիտի կուլ տամ, վաղուց կարգին նախաճաշ չեմ արել,— մռնչաց առյուծը և կոճակի պես կլորիկ դունչը մեկնեց դեպի շնիկը:

— Ծու՜ղ-րու՜-ղու՜... մեկ-երկու... — ուրախ չափ տվեց աքաղաղը:

— Հո-պա՛... հո-պա՛... — շուրթերը ծըլպացրեց շլդիկը:

Իսկ առյուծի դունչը այդպես էլ չհասավ շնիկին: Ինչ-որ աղմուկից Համլիկն աչքերը բաց արավ, նստեց անկողնում: Մայրիկը կանգնած էր նրա գլխավերևը, Արամն քաշքշում էր մոր փեշից ու թնկթնկում, երևի էլի քաղցրավենիք էր ուզում, խաղալիքներն իրենց տեղում էին, միայն շնիկը չկար: Համլիկը քնկոտ դես-դեն նայեց:

— Մայրիկ, ի՞նչ եղավ շնիկը,— հարցրեց լացակումած:

— Ի՞նչ շնիկ:

— Էն, որ մեծ ապերը գյուղից բերել էր, մի՞թե չտեսար: Ախր ես ու դու միասին էինք: Առյուծն էլ պիտի ողջ-ողջ կուլ տար, չե՞ս հիշում:

— Դու երազ ես տեսել, Համլիկ ջան,— ժպտաց մայրը:

— Երազն ի՞նչ է, մայրիկ:

— Երբ քնի մեջ մարդ բան է տեսնում ու ասում-խոսում է։

— Որ այդպես է, ես ուզում եմ էլի տեսնել։ Ախր շատ հետաքրքիր էր։ Փոքրիկ առյուծն ինչպե՞ս պիտի կուլ տար շնիկին։ Դու էլ աչքերդ փակիր, մայրիկ, դե շուտ — Ասաց ու վերմակը քաշեց գլխին։

Բայց շնիկը այդպես էլ չերևաց և, ինարկե, առյուծը նրան ողջ-ողջ կուլ չտվեց։



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Դե ախր ինչպե՞ս կուլ տար, երբ անպիտան Արայիկը անտառի թագավորին գցել էր մեղրի ամանի մեջ ու մայրիկից թաքուն հանել դրել էր ատամների տակ՝ լպստում էր։ Այս ամենը հետո միայն հայտնի դարձավ, բայց արդեն ուշ էր. Համիկը անկողնուց վեր էր կացել։

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

# ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ, ԱՐԵՎԸ ԵՎ ՓՈՔՐԻԿ ՏՂԱՆ

Նախորդ օրը ձյունն իր գալու մասին ոչ մի լուր չուղարկեց։ Ոչ երկնքից ձյան փոքրիկ փաթիլներ ընկան, ոչ ամպերը սպիտակեցին։ Առավոտյան բաց արինք աչքներս և տեսանք, որ ամեն ինչ սպիտակել է։

Ես արագ-արագ լվացվեցի, վերցրի պայուսակս ու վազեցի դուրս։

— Ցո՜ւրտ է,—հետևիցս բղավեց մայրիկս, իսկ ես շտապում էի, պետք էր հանդիպել ձյանը, բարևել, սիրել...

Մենք ձնե գնդիկներ պատրաստելով շոյեցինք ձյան փափուկ, սիրունիկ թշիկները։

Թափվո՜ւմ էին, թափվո՜ւմ փափլիկ փաթիլները...

Մեր առջևից քայլում էր մի փոքրիկ տղա՝ մեր դպրոցի առաջին դասարանցիներից մեկը։ Նա էլ մեզ նման զրուցում էր ձյան հետ։ Կռանում բուռ-բուռ վերցնում էր փափուկ ձյունն ու հիացած թափում ցած։

Մեր դպրոցի մուտքի դիմաց գույնզգույն վարդի թփեր կան։ Տղան կանգնեց վարդի թփերից մեկի մոտ։





ԱՌԱՆՑ ԽՈՍՔԻ

նայեց շուրջը, նայեց ձյան բարակ շերտով ծածկված թփին. «Ձյո՛ւն, դու չես կարող ամեն ինչ ծածկել»,— բարձրաձայն ասաց նա, մատը ձյան վրա թափ տալով: Հետո վարդի ճյուղի վրայից ցած թափեց ձյունը: «Տեսեք, հիմա երևում են կանաչ տերևները»,—նորից խոսեց նա: Ապա քընքշանքով շոյեց վարդի կանաչ, բայց թոշնած տերևներն ու վազեց:



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Մեր դասարանի պատուհանից ես նայում էի դուրս՝ ձյան փաթիլները թափվո՜ւմ էին, թափվո՜ւմ... Դարձյալ ծածկվել էր վարդի թուփը:

Դասերից հետո ես նորից քայլում էի նույն փոքրիկի հետևից: Արևն արդեն բացել էր իր աչքերը, հալվել էր թուփը ծածկող ձյունը:

Տղան կանգնեց, նայեց վարդի թըփին, նայեց արևին: Արևն աչքով արեց տղային, տղան ամուր փակեց աչքերը, ձեռքով տրորեց, կրկին բաց արեց, ծիծաղեց ու վազեց...

Այդ փոքրիկն էլ երևի ինձ նման և ձյուն էր սիրում, և կանաչ տերև, և կարմիր արև...

## ԵԹԵ ԿԱՐՈՂԱՆԱՄ...

Ես արդեն գրագետ եմ: Գիտեմ կարդալ, գրել և հաշվել: Ունեմ մի տուփ վեցգույնանի մատիտներ և կարող եմ ամառ, ձմեռ, տուն ու թռչուն նկարել:

Միք նայի հասակիս, որ այսպես փոքրիկ եմ: Երբ փակում եմ աչքերս, ես բժիշկ եմ, և ինժեներ, և շինարար, և օդաչու: Հա՜, չմոռանաք՝ ոչ թե հասարակ, այլ՝ տիեզերագնաց...

Ամե՜ն, ամե՜ն ինչ եմ ես, բավական է վերմակը գլխիս քաշեմ... Բայց, ճիշտն ասած, ես ուզում եմ մայրիկիս նման ուսուցչուհի դառնալ:

Ա՜խ, թե կարողանամ չար Արսենին ու Վաչիկին կարգի բերել:

Եթե կարողանամ շատախոս Սահակի ու Սամվելի սխալները հանգիստ ուղղել:

Եթե կարողանամ սուտլիկ Սոսին մի բան հասկացնել...

Եթե կարողանամ համբերել, չգոռգոռալ և բոլորին սիրել, ես անպայման մայրիկիս նման ուսուցչուհի

կգտնամ։ Պայուսակիս մեջ դրած տուն կբերեմ աշակերտներիս տետրերը։ Երբ տանը բոլորը քնեն, ես կվառեմ սեղանի լամպը և կուղղեմ տետրերը։

Մայրիկն ասում է՝ այդ մասին մըտածելը դեռ շատ շուտ է, բայց ձեր ականջին ասում եմ թաքուն՝ ես արդեն գնել եմ երկու շիշ կարմիր թանաք ու մի կարգին տեղ պահել...



# ՄՈՒԿԻԿԸ, ԿԱՏՈՒՆ ԵՎ ԱՔԱՂԱՂԸ

Մի օր մուկիկը դուրս եկավ բակ վազվզելու: Բայց նա շուտով վերադարձավ իր մոր մոտ և ասաց նրան.

— Մայրիկ, ես երկու գազան տեսա։ Մեկը վախենալի էր, իսկ մյուսը բարի էր ու սիրալիր։

Մուկ մայրիկը հարցրեց.

— Իսկ ինչպիսի՞ տեսք ունեին, դե պատմիր։

Մուկիկը պատասխանեց.

— Չար գազանն ուներ երկու սև ոտք, գլխի վրա՝ կարմիր կատար, քիթը սուր էր ու երկար, իսկ աչքերը նայում էին տարբեր ուղղությամբ։ Բայց, երբ ես անցա նրա մոտից, վեր թռավ, կանգնեց մի ոտքի վրա և սկսեց բարձր կանչել: Սաստիկ վախից ես չգիտեի, թե ուր թաքնվեմ:

— Դա աքաղաղն է եղել,— ասաց մայրիկը:— Նա սարսափելի չէ, քեզ երբեք վնաս չի տա: Իսկ ինչպիսի՞ն էր երկրորդ գազանը:

— Մյուսը պառկել էր արևի տակ և տաքանում էր: Նրա քիթը սպիտակ էր, ոտքերը գորշ էին, երբ տեսա նրան, լիզում էր իր սպիտակ կուրծքը: Նա նայեց ինձ ու սիրալիր ժպտաց:

— Հիմար, հիմար,— ասաց մուկ մայրիկը։ —Դա հենց ինքը կատուն է եղել, որից սարսափում է մեր ամբողջ ցեղը:

*Փոխադրություն գերմաներենից*



— Ծի՜վ, ծի՜վ, ծի՜վ,— կտուցով ապակին են ծեծում զարնանային ճնճղուկները:

Համիկը բացում է սև ու փայլուն աչիկները, բայց տեղից չի շարժվում:

— Ծի՜վ, ծի՜վ,—լուսամուտի մյուս կողմում ինչ-որ բան են ասում ծիտիկները:

Համիկն ուզում է հասկանալ: Կամացուկ ելնում է անկողնուց և հենց երկար գիշերազգեստով էլ մոտենում է պատուհանին:

— Ծի՜վ,—ուղիղ Համիկին նայելով ասում է ամենափոքր ծիտիկը:

— Մայրի՜կ,— ուրախությունից գլուխը կորցրած՝ խոհանոց է վազում Համիկը:— Եկե՜լ են, ճիշտ եմ ասում, արի տե՛ս, ինչքա՜ն շատ են...

— Ովքե՞ր են եկել,— ոչինչ չհասկանալով՝ երեխային է հետևում մայրիկը:

Նրանք մոտենում են լուսամուտին:

— Նայի՛ր, զարնան ծիտիկներն են եկել:




ԱՆԱՀԻՏ ՍԵԿՈՅԱՆ

Հիշո՞ւմ ես, դու պատմում էիր, որ մի օր էլ զարնան ծիտիկներն են արթնացնելու ինձ...

Եվ թռչկոտում է Համիկը, կոշիկներն է շփոթում: Էլ չի ասում. «Այսօր կիրակի օր է»: Նա գիտե, որ կիրակի՝ նշանակում է տանը մնալ:

— Շուտ գնանք նանկապարտեզ,— ճռվողում է նա:— Թաթուլիկին, Նունեին, Կարինեին պիտի պատմեմ, որ ծիտիկները ամենից շուտ ինձ են արթնացրել:

Իսկ մանկապարտեզ բառը ոչ թե շփոթում, այլ հենց այդպես էլ արտասանում է՝ նանկապարտեզ: Երկու ամիս առաջ

# ԳՆԱՑՔԸ

ՎԱՐԴԳԵՍ ԼԵՎՈՆՅԱՆ

Գնացքն ահա արագ թափով
Սլանում է ձորի ափով,
Շոգեքարշը հևում, փնչում,
Շնչակտուր ու՞ր է թռչում:
—Չուքու-չուքու,
Չուքու-չուքու... —
Ծանր բեռից ուժգին տնքում,
Ձայն է տալիս.—Ու-ո՜ւ, ու-ո՜ւ,
Ճամփա տվեք՝ գնամ հեռու:
Ես բերում եմ ծանր բեռներ,
Նավթ, գերաններ, ածխի լեռներ,
Ժամանակը իմ թանկ է խիստ,





ուղղակի ասում էր՝ ըպապապտեզ:

Ամբողջ ճանապարհին թռչկոտում, շատախոսում է գարնան ճնճղուկի պես: Հետո հիշում է ու տրտմանում.

Ծիտի՛կ, ծիտի՛կ, մոտ արի,
Որ տամ ցորեն ու գարի.
Չվախենա՜ս, չթռչե՜ս,
Ես չեմ ուզում բռնել քեզ:

Հանկարծ նա զարմացած նայում է ցածր ցանկապատից երևացող ծաղկած ծիրանենուն:

— Վա՜յ, մայրիկ, մի տես, գիշերն ինչքա՜ն ադիբուդի է բուսնել ծառին: Ծիտիկները կուտեն, կկշտանան...

Մայրիկն, իհարկե, բացատրում է, որ դա ծիրանենու ծաղիկներն են, բայց էլի Համիկն իրենն է շարունակում.

— Ճիշտ է, ադիբուդիից ծաղիկներ են, չէ՞, մայրիկ, ծիտիկների համար են բուսնել:



## ԽՌՈՎԱԾ ՓԻՍՈՆ

ԳԱՌՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆ

*Փիսո՛, փիսո՛, իմ սիրուն,*
*Արի՛, արի՛ տանեմ տուն.*
*Մեր Գոհարը քեզ համար*
*Լաց է լինում միալար:*

*Էլ քո պոչից չի քաշի,*
*Էլ առանց քեզ չի ճաշի,*
*Ասաց. «Փիսոն թե գա ետ,*
*Էլ չեմ կռվի նրա հետ»:*

**Ես չեմ կարող կանգնել հանգիստ.**
**Հանքահորն է ինձ սպասում,**
**Գործարանը հումք է ուզում,**
**Կայարանը նստած ճամփին**
**Սպասում է ինձ անհանգիստ:**
**Ինձ են նայում քաղաք ու գյուղ,**
**Մեծ կառույցներ հազար ու բյուր,**
**Մեքենաներ ու շինանյութ**
**Բերում-տանում եմ ամենուր:**

**Շոգեքարշը քրտինք մտած՝**
**Սուրում է խենթ ու սրընթաց,**
**Մերթ գոլորշին է դուրս փչում,**
**Մերթ՝ վայրացած ահեղ ճչում.**
**—Ու-ո՜ւ, ու-ո՜ւ,**
**Ու-ու, ու-ու...—**
**Քաշում է իր պոչից կպած**
**Վագոնները՝ բեռից կքած.**
**Անիվները արագ-արագ**
**Պտտվում են գծին բարակ,**
**Իսկ ռելսերը չափ են տալիս,**
**Կամուրջն ասես ծափ է տալիս...**



**Ու գնացքը դեռ թռչում է,**
**Ծանըր բեռից մռնչում է:**



Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

# ԱՐՄԵՆԸ

*ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ*

Եղբորս տղայի՝ Արմենի հետ վերադառնում էինք մանկապարտեզից։ Դուք Արմենին չե՞ք ճանաչում. նա շատ հետաքրքիր տղա է։

Այդ օրը նա մանկապարտեզում մեծ վեճ էր ունեցել իր շապիկի գրպանին ասեղնագործված թմբուկի շուրջը ու պնդել էր, որ իր թմբուկը թմբկահարում է, միայն շատ կամաց, հազիվ լսելի, և, եթե երեխաները ականջները հպեն թըմբուկին, ձայնը անպայման կլսեն։

Երեխաները հերթով ականջները դրել էին նրա կրծքին ու իսկապես թմբուկի ձայն էին լսել։

Նա այդ օրը հաղթանակած կվերադառնար տուն, եթե... Ախ այդ մեծե՜րը այդ մեծե՜րը, նրանք կարծում են, թե իրենք ավելին գիտեն և ուզում են ամեն



ինչ բացատրել, կարծես դա ավելի կարևոր է, քան այն, որ երեխաները երբ ականջները հպում են եղբորս տղայի կրծքին, թմբուկի ձայն են լսում։

Ճանապարհին նա ինձ հարցրեց.

— Հորեղբայր, սիրտը ի՞նչ բան է։

— Սիրտը թմբուկ է, — ասացի ես՝ չիմանալով, որ քիչ առաջ դաստիարակչուհին ուրիշ բան էր ասել։

# ՓՈՔՐԻԿ ՈՐՍՈՐԴԸ



*Մի օր Բոժոժը և մեր Աղասին*
*Ելան, որ որսի գնան միասին։*



*Տեսան լալիս է մայրիկ հավիկը.*
*— Ա՜խ, տարավ աղվեսն իմ չալ լավիկը։*



*Գնացին մեկտեղ, տեսան՝ բադիկը*
*Փնտրում է լալով կորած՝ ճուտիկը։*



*Քիչ էլ գնացին, տեսան՝ անտառում*
*Շլդիկն էլ կորած ձագին է փնտրում։*



— Եկե՛ք, շո՜ւտ եկեք,— ասաց Աղասին,—
Կբռնենք հիմա էն գող աղվեսին:



Մեկ էլ ինչ տեսնեն՝ ձագուկներին խեղճ
Աղվեսն է լցնում իր տոպրակի մեջ:



— Հե՜յ, թաթերդ վե՛ր,— կանչեց Աղասին,
Ու վրա տվին նրանք միասին:



Գող աղվեսն անգամ չփորձեց ծլկել,
Ինքը մենակ էր, նրանք՝ հինգ ընկեր:

Նկ. ԿԱՐԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

# ԽՐՏՎԻԼԱԿԸ

ԷՍՖԻՐԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հորաքույրը փոքրիկ Լալային մի բուռ արևածաղկի սերմ տվեց և պատվիրեց.

— Լալիկ ջան, պապիկին կասես քեզ համար մի փոքրիկ տեղ տա, որ այս արևածաղիկը ցանես:

Լալան մտավ տուն և պապիկին գտավ քնած. փորձեց արթնացնել, բայց մայրիկը արգելեց: Լալան անհամբերությունից չէր կարողանում նստած մնալ: Հենց որ մայրիկը դուրս եկավ, նա մոտեցավ պապիկի մահճակալին, բռնեց նրա թևից և սկսեց ցնցել: Պապը չէր արթնանում: Անհամբեր Լալիկը բռնեց նրա մորուքից և քաշեց: Պապիկը բարկացած արթնացավ, բայց տեսնելով Լալիկին, ժպտաց:

— Պապ, գնանք ինձ տեղ տուր, որ արևածաղկի սերմերը ցանեմ:

Քիչ անց Լալիկը այգի գնաց և պապիկի օգնությամբ ցանեց սերմերը:

— Պապ, ե՞րբ կծլեն սերմերը,— հարցրեց Լալիկը:

— Շուտով, բալիկս:

Այգուց նոր էին դուրս եկել, երբ Լալիկը հարցրեց պապիկին.

— Պապ, հիմա ծլած կլինե՞ն:

— Դեռ չէ, բալի՛կս:

Երկրորդ րոպեին նորից հարցրեց, և երրորդ և չորրորդ րոպեներին՝ նորից, հինգերորդ րոպեին արդեն Լալիկը չհամբերեց, դուրս նետվեց տնից և վազեց այգի: Նա տխրեց. սերմերը չէին ծլել:

Լալիկը վշտացած տուն մտավ և գանգատվեց պապիկին.

— Պապ, սերմերը չեն ծլում:

— Ա՜յ դու անհամբեր բալիկ, անպայման կծլեն: Իսկ եթե շտապես՝ չեն ծլի:

Լալան հանգստացավ, բայց քիչ անց նորից վազեց այգի: Այս անգամ նա տուն մտավ լալով.

— Պապ, դու խաբում ես, սերմերը չեն ծլում:



Պապիկը ծիծաղեց և սկսեց հեքիաթ պատմել, որ Լալիկը չմտածի սերմերի մասին։

Անցան օրեր։ Վերջապես արևածաղիկը դուրս եկավ, մեծացավ և սկսեց ծաղկել։ Լալիկի ուրախությանը չափ չկար։ Ամեն անգամ, երբ նա արթնանում էր, անմիջապես վազում էր այգի և հըրճվանքով նայում արևածաղկի դեղին գըլխիկներին, որոնք դեպի արևելք դարձած՝ սպասում էին արևին, որ նրա հետ շարժեն գլխիկները։ Ամեն ինչ հաջող էր գնում, բայց այդ չար ծտերը վնաս էին



Նկ. ԼԵՎՈՆ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

հասցնում արևածաղկին և վշտացնում Լալիկին։ Պապը մտածեց և ծտերից պաշտպանվելու ելքը գտավ։

Մի օր էլ սովորականի նման Լալիկը արթնացավ և վազեց այգի։ Դեռ հեռվից նկատեց, որ արևածաղկի մոտ կանգնած է պապիկը, մոտեցավ և քաշեց նրա փեշից, բայց պապիկը չշարժվեց։

— Պա՛պ, պա՛պ...

Լալան զարմացած նայեց պապիկին ու նկատեց, որ պապիկը միոտանի է, այն էլ՝ փայտից։ Լալան վախեցած ճչաց և վազեց տուն, բայց ճանապարհին սայթաքեց և վայր ընկավ։ Նրա ձայնը լսելով՝ դուրս եկավ քույրը, որը Լալայից մեծ էր, բայց դեռ դպրոց չէր գնում։ Նա բարձրացրեց Լալային, բայց հետո նկատելով այգու պապիկին, ինքն էլ վազեց տուն։

Լալան շնչակտուր ներս ընկավ և ճչաց.

— Վա՜յ, պապ, մեր այգում ուրիշ պապ կա...

Պապիկը պատուհանից նայեց դեպի այգի և սկսեց ծիծաղել.

— Այ թե վախեցել ես հա՜։ Այդ խըրտվիլակ է, ես եմ պատրաստել, իմ հին շորերը հագցրել, որ ծտերը վախենան և քո արևածաղիկը չուտեն...



# ՔՆԿՈՏԸ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

— Արդեն ուշ է, Արմինե,
Դե շուտ արի տուն,
Ծիտ ու սարյակ լռել են,
Մտել են խոր քուն:
— Կգամ, մայրիկ, բայց
տես, հա՛,
Շորս չեմ հանի,
Հենց որ շորերս հանեմ՝
Քունս կտանի:



* * *

*Օր մը տղան հարցուց հորը.*
*— Ինչո՞ւ, հայրիկ, դեղձանիկը*
*Ազատ չէ մեր կատուին պես։*
*— Ինչո՞ւ,— կրկնեց հայրը տղուն,—*
*Չէ՞ որ կատուն սուր ճանկերով,*
*Ինչպես մուկը,*
*Դեղձանիկն ալ, եթե բռնե, կը մեռցնե...—*
*Տղան քաշեց հորը ձեռքեն.*
*— Թե որ չար է կատուն այդպես,*
*Բռնենք, դնենք վանդակին մեջ։*



ՎԱՐԴԵՐԵՍ ԳԱՐԱԿԵՈԶՅԱՆ



# ԱՍԵՔ, Ի՞ՆՉ ԵՄ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Հապա մի լավ նայեք տեսեք,
Հետո միայն մի բան ասեք.
Հովազի պես պուտ-պուտուրիկ,
Մորթի ունեմ չալպուտուրիկ,
Փոքրիկ պոզեր՝ սիրուն ու կարճ,
Ասես այծ եմ եղել առաջ,
Ունեմ ձիու բարակ ոտքեր,
Եղջերուի մեծ-մեծ աչքեր,
Եղնիկի վիզ՝ երկար, բարակ,
Ման եմ գալիս արագ-արագ:

# Հանելուկներ

*Ծնվում է ջրից,*
*Ապրում ցամաքում,*
*Շուրջը բերկրալից*
*Լույսով համակում։*

(Էլեկտրական լույս)

*Ի՞նչ ձկնորս է՝ ուռկան չունի,*
*Ջրերի մեջ կշրջի,*
*Ամբողջ օրը ձուկ կբռնի*
*Ու շորերը չի թրջի։*

(Ջկնկուլ)

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

# ԹԵ ԻՆՉ ՊԱՏԱՀԵՑ,
# ՎԵՐԱՐԿՈՒ



Վերարկու հագնելու ժամանակը եկել էր։ Բոլոր կենդանիները նույնպես ուզում էին տաք հագնվել, որ չմրսեն։ Բայց իշուկը չուզեց վերարկու հագնել։

— Ես մրսկան չեմ,— զռռաց նա և կանաչ պտերով մի դեղին փողկապ կապելով իր վզին՝ ավելացրեց.— Այսպես է վայել արտիստին։

Հպարտ-հպարտ ասաց նա և սկսեց բարձր ձայնով երգել։ Իշուկը ճիշտ արեց, չէ՞ որ նա համերգային մի մեծ խմբի հետ պետք է ելույթ ունենար։

Եկավ այդ օրը։ Բոլոր հետաքրքրասերները շտապում էին թատրոնի շենքը. չաղլիկ արջուկներն ու պճնամոլ աղվեսները, աշխույժ սկյուռիկներն ու աքիսները, գոռոզ քարայծերն ու խոյերը, մաքրասեր հնդկահավերն ու սագիկները...

Թատրոնի դիրեկտոր ագռավը ողջունեց բազմաքանակ հյուրերին ու դիրիժյոր կաչաղակին։



+10

# ԵՐԲ ԻՇՈՒԿԸ ՉՈՒԶԵՑ ՀԱԳՆԵԼ

— Ե՞րբ է գալու մենակատարի հերթը,— դժգոհում էին անհամբեր սկյուռները ու աքիսները, որոնք իշուկի բարեկամներն էին։

Վերջապես սև կեռնեխների ու երաշտահավերի երգչախմբից հետո բեմի վրա երևաց իշուկը։ Նա իշային մի հայացքով զննեց դահլիճը, որը լեփ-լեցուն էր։

— Բռա՛վո։ Բռա՛վո,— նախքան երգելը գոհունակությամբ ծափահարեցին նրա բարեկամները։

Բայց երբ իշուկը բաց արեց բերանը, քիչ մնաց բոլորը խլանային. ասես մի հնացած շեփորի միջից էր գալիս այդ անդուրեկան ձայնը։

— Թյուուուու՜,— շվացրին թռչնիկները, ոռնացին գայլերը, հաչեցին աղվեսները, խռխռացին խոզերը։

Իսկ արջերը մրթմրթացին.

— Խայտառակություն է սա։ Խայտառակությո՜ւն։

— Մեր երգիչը, ցավոք սրտի, մրսեցրել է իր կոկորդը,— մեջ ընկավ կաչաղակը՝ ներողություն խնդրելով։

Բայց հանդիսատեսը շարունակ ծիծաղում էր ու զայրանում։

— Ինչո՞ւ է մրսել,— կչկչում էին կարմրակատարիկները, կռկռում էին բադիկները, ծղրտում էին աքաղաղները։

Իսկ բադակտուցը վճռական կերպով հայտնեց իր կարծիքը.

— Նա ընդհանրապես չի կարող երգել։

Իշուկը գլուխը կորցրեց. դառը մտքեր պաշարեցին նրան և նա շատ տխրեց։

— Եթե ես վերարկուն հագնեի, այսպես չէր լինի։

Ասաց ու սկսեց լաց լինել։

*Փոխադր. Ժյուն գերմաներենից*



Տրւում է անվճար՝ «Պիոների» 7-րդ համարի հետ:

ԱՌԱՆՑ ԽՈՍՔԻ















ՁԱԽՈՐԴ ՁԿՆՈՐՍԸ













## ԲԱՌԱՑԱՆՑ

*Այս ցանցը կազմված է 11 շղթայից, որոնցից յուրաքանչյուրի վրա գրված է մեկական աշխարհագրական անուն: Սակայն տառերի մի մասը չի երևում: Փորձեք գտնել այդ անունները:*

*Ուղղահայաց.— 1. Արաբական ծովը թափվող գետ: 2. Հերոս քաղաք՝ Սև ծովի ափին: 3. Գետ, որը հոսում է ութ երկրների տերիտորիայով: 4. Քաղաք, որի համալսարանում սովորել է Լենինը: 5. Աֆրիկյան պետություն: 6. Աֆրիկայի ամենամեծ գետը:*

*Հորիզոնական.— 7. Կովկասյան լեռների ամենաբարձր կետը: 8. Նավահանգիստ՝ Վրաստանում: 9. Քաղաք՝ Մեքսիկայում: 10. Ամենախոր լիճը՝ աշխարհում: 11. Միությենական հանրապետության մայրաքաղաք:*

| | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 |
|---|---|---|---|---|---|---|
| 7 | Ի | Լ | Դ | Ր | Ա | Ս |
| 8 | Բ | Դ | Թ | Ա | Մ | Է |
| 9 | Դ | Ե | Ն | Ի | Ժ | Ո |
| 10 | Բ | Ս | Յ | Ա | Ա | Ո |
| 11 | Ս | Ա | Բ | Լ | Ր | Ն |

*Առաջարկ՝*

*ՍԵՐԺԻԿ ԱՂԱԲԵԿՅԱՆԻ*

## ԲՆԱԿԱՆ ԹՎԵՐԻ ԳՈՒՄԱՐԸ

*Այս դեպքը պատահել է 1785 թվականին գերմանական Բրաունշվեյգ քաղաքի դպրոցներից մեկում:*

*Մի անգամ ուսուցիչը իր աշակերտներին առաջարկեց գումարել բոլոր թվերը՝ 1-ից մինչև 100 ներառյալ:*

*Ուսուցիչը կարծում էր, որ այդ խնդիրը վճռելու համար կպահանջվի բավական երկար ժամանակ: Բայց մեծ եղավ նրա զարմանքը, երբ քաղաքի ջրմուղագործի ութամյա տղան երկու րոպեի ընթացքում վճռեց խնդիրը և ասաց ճիշտ պատասխանը՝ 5050:*

*Այդ երեխան Կարլ Ֆրիդրիխ Գաուսն էր, որը հետագայում դարձավ խոշոր մաթեմատիկոս:*

*Փոքրիկ Գաուսը ինչպե՞ս վճռեց ուսուցչի առաջարկած խնդիրը:*

*Առաջարկ՝ ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆՈՒ*

## ՄԿՐԱՏԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ





*Կարո՞ղ ես քառակուսի թղթից ստանալ այսպիսի պատկեր:*

*Առաջարկ՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ...

Էքսկուրսիայի ժամանակ Գուրգենը, Պետրոսը, Գևորգը մտան խանութ խնձոր գնելու: Խնձորի մեկ կիլոգրամն արժեր 60 կոպեկ: Գուրգենը գնեց մեկ կիլոգրամ, Պետրոսը՝ կես կիլոգրամ, իսկ Գևորգը խնձոր չգնեց, որովհետև դրամ չուներ:

Տղաները բոլոր խնձորները միասին կերան: Երբ տուն վերադարձան, Գևորգը մայրիկից դրամ վերցրեց, որ տա տղաներին:

— Ամոթ քեզ, Գևորգ, չե՞ս ամաչում, մենք ընկերներ ենք, մի օր էլ դուցե դու կհյուրասիրես մեզ,—ասացին Գուրգենն ու Պետրոսը և դրամը չվերցրին:

Տուն վերադառնալիս Գևորգը սկսեց մտածել. «Իսկ եթե տղաները դրամը վերցնեին, ես քանի՞ կոպեկ պետք է տայի Գուրգենին և քանիսը՝ Պետրոսին»:

Իսկ դու ի՞նչ ես կարծում, ամեն մեկին քանի՞ կոպեկ պետք է տար Գևորգը:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ



# ՍԵՎԱՆԻ ԱՓԻՆ

ՍԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ

Հանգիստ է ծովը, էլ չի ալիքվում,
Մանկան պես քնած՝ խաղից հոգնաբեկ,
Այնքա՞ն պայծառ է և այնքա՞ն խնդուն՝
Թվում է հողմեր-չի տեսել երբեք։
Տե՛ս, մայրամուտի պայծառ արևը
Կապույտ ջրերին գոհար է մաղում,
Սարից փչում են քնքուշ հովերը՝
Ծովը խնդում է, ծովը ծիծաղում։
Շուրջը սիգապանծ լեռներ են անվերջ,
Լեռների գրկում ծովն իմ սրտաբաց,
Ու կապո՛ւյտ, կապո՛ւյտ իր հայելու մեջ
Հանգիստ սահում է արևը հոգնած։

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ԹԱԹՈՒԼ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ԳԱՐՈՒՆ

Արագիլները եկել են ահա,
Արագիլները էլ չեն համբերել,
Նրանց բույներն էլ, ախ, նրանց նման
Մի ոտքի վրա կանգնել են երկար
Ու դաշտերի մեջ սպասել անքուն։

Արագիլները եկել են ահա
Ու վերադարձի բույնն են նորոգում։

# ՀՆՁՎՈՐԸ

Հնձվորը երգով ցորեն էր քաղում,
Ցորենի հասկեր՝ մթնով պարուրված,
Միայն լուսինն էր երկնքում խաղում,
Կարծես խավարում հսկում էր նրանց։

Հնձվորի երգը այնպես էր հնչում,
Ասես օրոր էր ասում մեղմաբար,
Եվ այնտեղից, ուր հնձվորն էր անցնում,
Պառկում էին լուռ հասկերն անհամար
...քնելու համար։